# ՆԱՎԱՍՏԻՆ



ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Նա՝ գյուղական մի տղա,
Ուսին դրած գերանդին,
Այն առավոտը խաղաղ
Գնում էր արտն առվույտի,
Երբ որ կանգնեց նրա դեմ
Կատարածուն, հեծած ձին.
— Պատերա՛զմ է, չգիտե՞ս,
Ո՞ւր ես գնում դու հնձի...—
Եվ ինչ որ չէր սպասում՝
Թողած արտը առվույտի,
Նա ծովերի մեջ լազուր
Դարձավ հանկարծ նավաստի...

Կուրծքը բացած փոթորկին,
Օգնականն էր բոցմանի,
Եվ միշտ արի էր հոգին,
Լցված սիրով հայրենի:
Նա հեռավոր ծովերում,
Հիշում էր արտն առվույտի,
Եվ փոքրիկ գյուղը հեռվում
Մայր ցամաք էր կարոտի:
Մտքի հազար թևերով
Հաճախ գյուղն էր շտապում,
Եվ ծովերը հեռավոր
Իրենց գյուղին էր կապում:
Տեսավ քանի՛ ծովամարտ
Եվ քանի նավ խորտակեց,
Մինչ իրենց նավը անպարտ
Իր խարիսխները ձգեց
Խաղաղության ափերին,
Երբ հայրենիքն ազատված,
Սպասում էր քաջերին,
Հաղթանակով տուն դարձած:
Ու տուն դարձավ նավաստին:
Եվ հիմա գյուղն այն փոքրիկ,
Որ ուներ արտ առվույտի,
Լեռների մեջ անարիկ,
Ու-ներ լոկ մի անվուղի,
Մեծ ճամփեքից կտրված,
Եվ անունը այդ գյուղի,
Քարտեզի մեջ չէր գրված,
Հիմա ունի նավաստի:

Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ



# ՄԵՐ ԲԱԺԻՆ ՃԱՇԸ

ՌՈՒԲԵՆ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Կրկնի՛ր,— կաթսայի մի ականջից մյուսը թաշկինակ կապելով և ստուգելով հանգույցների ամրությունը, ասաց հորաքույրս:

— Փողոցի առաջին կեսն անցնելիս պիտի նայեմ ձախ, երկրորդ կեսն անցնելիս՝ աջ... Պիտի հետևեմ, որ ճաշը լցնեն մինչև այս խազը: Եթե մսի կտորներ լինեն՝ կեղտոտ մատներս չպիտի մտցնեմ ճաշի մեջ, պիտի համբերեմ, տուն հասնեմ ու ասեմ. «Հորաքույր, ես միս եմ ուզում»: Հորաքույրը կտա՝ կտա, չի տա՝ չի տա: Ճաշի միսն այնքան էլ համեղ բան չի:

— Այո՛, համեղ չի,— պնդեց հորաքույրս,— միսը եփվում է, եփվում է, եփվում է՝ համ ու հոտը տալիս է ջրին ու մնում է մի բան, որն արդեն միս չէ: Դու ինձ հասկանո՞ւմ ես:

Չէ, ես հորաքրոջս չէի հասկանում: Ես գիտեի, որ միսը՝ եփած թե խորոված, տապակած թե ծեծած՝ համեղ է և աշխարհում ոչ ոք չէր կարող ինձ հակառակը ապացուցել: Անհասկանալին մսի համեղության-անհամության հարցը չէր, չէ: Ես չէի հասկանում, թե ինչպես կարող է որևէ բան, այս դեպքում՝ միսը, եփվելուց, եփվելուց, եփվելուց հետո դառնալ մի այլ բան, այս դեպքում՝ ոչ միս: Ընդհակառակը, ես կարծում էի, որ միսը հենց եփվելուց հետո է դառնում միս, և եթե գոյություն ունի ո՛չ միս, ապա դա հում միսն է որ կա:

Փողոցում մտքումս ես շարունակում էի վիճել հորաքրոջս հետ՝ մսից անցնելով ձվին, լոբուն, սիսեռին և բոլոր այն բաներին, որոնք ուտելու համար եփվում են: Ձուն՝ եփած ձուն է,— համոզում էի ես հորաքրոջս,— լոբին՝ եփած լոբին է, սիսեռը՝ եփած սիսեռն է, որովհետև, սիրելի հորաքույր, եթե ասում ես՝ ձու եմ կերել, կամ լոբի, կամ սիսեռ, ոչ ոքի մտքով չի էլ անցնում հարցնել՝ եփա՞ծ էր կերածդ, թե՞ հում:

Կաթսայի ծռմռված կափարիչը չէր նստում տեղը՝ չխչխկում էր, և այդ չխչխկոցից բոլորը գլխի էին ընկնում, որ դատարկ է ամանը: Ես մատով սեղմում-զսպում էի կափարիչը, բայց հենց մատս թուլանում էր, կափարիչը շարունակում էր աղմկել:

Աղբարկղը քրքրող մի պառավ շուն, որ ճարպոտ լրագիր էր ծամում, ընկավ ետևիցս ու հոտոտում էր օդի այն մասը, որտեղով անցնում էր ձեռքիս կաթսան:

— Չմոտենաս,— ասացի ես շանը,— մազերդ թափվում են՝ կմուրտառես շալվարս:

Շունը նստեց ետևի թաթերին, ճպճպացրեց աչքերն ու հաչեց՝ հա՜ֆ, հա՜ֆ: Լակոտի նման հաչեց ու ես զարմացա, որ մեծ, պառավ շունը հաչում է լակոտի նման:

— Տե՛ս, ոչինչ չկա,— ամանի բերանը շան կողմն ուղղեցի ես, բայց նա արդեն հասկացել էր, որ դատարկ է ամանը: Դունչը վեր տնկած՝ նա հիմա նայում էր ծառի ճյուղերին ճլվլացող ճնճղուկներին, իսկ նրա պոչը, որ կարծես մի ուրիշ շան պոչ լիներ, մատնելով տիրոջ ախորժակը՝ թփրտում-ավլում էր ասֆալտը:

Փողոցի առաջին կեսն անցա ձախ նայելով, երկրորդ կեսը՝ ետ նայելով, շունը դեռ նստած էր ծառի տակ ու մտքում, երևի, արդեն բռնել-կերել էր բոլոր ճնճղուկները:

— Ա՛յ տղա, ա՛յ տղա,— երկրորդ հարկի լուսամուտից եռանկյունաձև ծրար էր թափահարում մի պառավ,— նամակս չե՞ս գցի փոստարկղը:

— Կգցեմ,— ասացի ու կաթսան դրեցի գետնին, որ որսամ օդում ճախրող եռանկյունաձև ծրարը:

— Ոտքերս ցավում են,— ասաց պառավը,— վաղն անձրև կգա:

Ծուլորեն էր իջնում ծրարը, պտտվելով, ճոճվելով՝ վարժեցրած աղավնու նման, մեկ հայտնվում էր



իմ գլխավերևում, մեկ կպչում էր, հեռանում, ասես ուզում էր բռնվել, բայց չէր կարողանում:

Եռանկյունաձև ծրարը պառկեց ասֆալտին...

— Ա՜խ, աստված,— հառաչեց պառավը և էլի խոսքեր ասաց, որ ես չլսեցի, ծրարն ու կաթսան ձեռքիս հեռացա:



Ես կանգնեցի պատահած առաջին փոստարկղի մոտ ու մտածում էի, թե ինչ հնարքով ձեռքս հասցնեմ ճեղքին: Մատներս հազիվ էին քսվում կապույտ արկղիկի տակին, ոտնաթաթերիս կանգնելն էլ օգուտ չտվեց, ու ես փորձեցի հիշել, թե գազանանոցում տեսածս կենդանիներից որի ոտքերն են ամենաերկարը:

— Այ՛, ա՛յ, ա՛յ, ա՛յ,— ուղիղ ականջիս մոտ ասաց մի ծերուկ, որ չգիտես որտեղից բուսավ և ինչպես հայտնվեց կողքիս, երբ փողոցում մինչ այդ ոչ ոք չկար:

Նա մատներիս արանքից դուրս քաշեց ծրարը, խոթեց փոստարկղի ճեղքը, հետո մատով թմբկահարեց ծրարի դուրս մնացած սուր ծայրն ու ծափ զարկեց.

— Վե՜րջ: Հիմա հանգիստ խղճով գնա ստացի՛ր ձեր բաժին ճաշը:

Ի՞նչ իմացավ, որ գնում եմ մեր բաժին ճաշը ստանալու: Արագ-արագ հիշեցի լսածս բոլոր հեքիաթները՝ ծերուկին որևէ հեքիաթում տեղավորելու նպատակով, բայց դրանից ոչինչ չստացվեց, որովհետև նրա չոր մատները քորում էին քրտինքից քոր եկող գլուխս, և ինձ թվում էր, ուր որ է կքնեմ:

— Այսօր բորշչ են տալիս,— ասաց ծերուկը,— տավարի թարմ մսով բորշչ: Երբ մսավաճառ Սմբատն ինձ համար տավարի միս էր բերում, ես ասում էի կնոջս. «Էլիզավե՛տա, զբաղվիր ուրի՛շ գործերով, թույլ տուր՝ ե՛ս ծեծեմ միսը»: Կապում էի Էլիզավետայի գոգնոցը, վերցնում էի թակը ու ծեծում էի այնքան, մինչև միսը համարյա եփվում էր: Դու գիտե՞ս ինչ բան է ոգևորությունը: Առանց ոգևորության ոչինչ չի ստեղծվում: Առանց ոգևորության անհամ է ամեն ինչ: Չես էլ հարցնում, թե ինչու չէի թողնում, որ կինս ծեծեր տավարի թարմ միսը: Որովհետև նա ծեծում էր պարտականություն կատարելու նման, առանց ոգևորության և ստացվում էր անհամ կերակուր:

— Ճիշտ է,— դուրս թռավ բերանիցս, ու ես ամաչեցի:

— Տեսնո՞ւմ ես, մի մատ տղա ես, ձեռքդ դեռ չի հասնում փոստարկղին, բայց արդեն գիտես, որ ոգևորությունը կարևոր բան է: Ես քեզ ասեմ. նույնիսկ անհամ կերակուրը կարելի է համեղ դարձնել, եթե ուտես ոգևորությամբ:

Ուրախությունից մոռացած, որ ձեռքիս կաթսա կա, ես ցանկացա ծափ զարկել ու վայր գցեցի կափարիչը և սա՝ եզրերը կրծոտած բոքոնի նման գլորվեց-գլորվեց, դեմ առավ պատին ու մեջքի վրա ընկավ գետնին: Երբ ես մոտեցա, կափարիչը դեռ ցնցվում էր:

— Նույնիսկ եթե ուտելու ոչինչ չկա,— հավասարվելով ինձ՝ շարունակեց ծերուկը,— կարող ես ոգևորությամբ սնվել: Ոգևորությունը քեզ կարող է տալ ամեն ինչ: Կարևորն այն չէ, թե ինչ ես ուտում, կարևորն այն է, թե ինչ հաճույք ես ստանում ուտելուց: Իսկ հաճո՜ւյք, մե՜ծ հաճույք տալիս է միայն ոգևորությունը: Պատկերացրու մեկին, որ ունի ամեն տեսակի ուտելիք, բայց չունի ոգևորություն: Ասա, տեսնեմ, ի՞նչ հաճույք է ստանում նա ուտելուց: Ո՜չ մի հաճույք:

Ես հիշեցի ճնճղուկների ճլվլոցի տակ նստած պառաված շանը, որն ինձ վրա հաչեց լակոտի նման, երբ ես նրան խնդրեցի չմոտենալ, չմուրտառել շալվարս: Ամենազզվելի բանը շան մազն է: Առհասարակ մազը զզվելի բան է և ավելի է զզվելի դառնում, երբ հայտնվում է հացի, ճաշերի մեջ: Ինչքա՜ն ոգևորություն է պետք, որ համեղ դարձնես մազոտ ճաշը:

— Իհա՜րկե,— ասաց ծերուկը, լավ կլինի, եթե և՛ համեղ կերակուր ունենաս, և՛ ոգևորություն: Բայց դե, այս երկուսին ո՞նց կապես մի տեղ:

Համեղ կերակուրն էլ, ոգևորությունն էլ ինձ պատկերացան արագավազ շների տեսքով, որոնց շղթաներից պինդ բռնած, քաշում էր այս ծերուկը՝ մի տեղ կապելու համար:

— Ուրեմն, դրանք շնե՞ր են,— փռթկացի ես:

— Իհա՜րկե, շներ են,— քրքջաց ծերուկը, դու չգիտեի՞ր, որ դրանք իրար հետ կռվող, իրար կծող, իրարից հեռու փախչող շներ են:

Մենք հռհռում էինք, մենք չէինք կարողանում հանգստանալ: Ծիծաղի մի աստիճան կա, որին հասնելուց հետո ամեն ինչ արդեն դառնում է ծիծաղելի: «Շուն» բառն արդեն ծիծաղելի է: «Շ» տառն արդեն ծիծաղելի է: Մեր հանդիպումը, դատարկ կաթսան, փոշոտ ասֆալտը, հատուկենտ անցորդները, մեր ծիծաղը, ամեն ինչ ծիծաղելի է, ու մենք խեղդ-

*վում էինք ծիծաղից: Իսկ երբ արցունքներ հայտնվեցին, ծերուկը գրպանից թաշկինակ հանեց ու չորացրեց նախ իմ, հետո և իր աչքերը: Դրանով էլ մեր ծիծաղն ավարտվեց: Ես էլ, ծերուկն էլ մեկ-երկու անգամ փորձեցինք շարունակել ծիծաղը՝ ոչինչ չստացվեց, ասես արցունքների հետ մեր միջից դուրս եկավ նաև ծիծաղը:*

*Հիմա մենք քայլում էինք ընդհանուր ուրախություն ապրած հարազատների նման և ինձ տանջող միակ հարցն էր, թե որտեղ էր այս բարի, այս խելոք, այս ուրախ ծերուկը մինչև օրս: Այսպիսի մի պապիկ էր պետք այն օրը, երբ մայրս թողնելով ինձ հորաքրոջս տանը, գնաց ու չվերադարձավ, այսպիսի պապիկ էր պետք այն օրը, երբ վերքերն հազիվ բուժած հայրս գնացք նստեց՝ երկրորդ անգամ ռազմաճակատ մեկնելու համար: Այսպիսի պապիկ էր պետք ինձ ամեն օր՝ անհամ ճաշեր ուտելիս, ճաշերի միջից մազերը հանելիս, հորաքրոջս աղոթքները լսելիս, ընկնելիս, ծեծվելիս, ամեն ժամ էր պետք ինձ այս ծերուկը, բայց նա չկար ու ես չգիտեի, որ նա կա:*

*— Պապի՛կ,— ասացի ես նրան ճաշարանի դռան մոտ,— դու ինձ սպասիր, հա՞: Դու կարծում ես, հե՞րթ եմ կանգնելու: Չէ՛, հորաքույրս ասաց, որ երեխաները հերթ չեն կանգնում:*

*— Ես չեմ էլ շտապում,— աչքերը կկոցեց ծերուկը,— ես քեզ կսպասեմ դիմացի այգում:*

*Մեր բաժին ճաշը ես զգուշությամբ դուրս բերեցի ճաշարանից և մինչև այգի մտնելը որոշեցի հորաքրոջս նման ստուգել թաշկինակի հանգույցների ամրությունը: Ճաշի ծանրությունից հանգույցները սեղմըվել էին, պնդացել և ասես ոլորել էին կաթսայի տաք ականջները: Ամբողջ ճաշամանը տաք էր, և աստիճանաբար կափարիչն էլ էր տաքանում՝ այրելով մատս: Բայց ես թմրած այրվող մատս ետ չէի քաշում, որովհետև կափարիչը նույն պահին բաց էր թողնում թթու կաղամբի հոտով գոլորշին և ինձ թվում էր՝ ոչ թե գոլորշին է փախչում, այլ՝ ճաշը:*

*Այգում մարդ չկար, և դժվար չէր գտնել ծերուկին: Նա նստած էր ծառի ճյուղերով կիսով չափ ծածկված նստարանին և լրագիր էր կարդում:*

*— Եկա՞ր,— չհասկացա ուրախացա՞վ, թե զարմացավ ծերուկը և ինձ համար տեղ էր ուզում ազատել, բայց տեսավ, որ ամբողջ նստարանը ազատ է:*

*Ես նստեցի նրա կողքին ու կաթսան դրեցի մեր միջև:*



*— Բորշչ է, չէ՞,— հարցրեց ծերուկը, բաց անելով կաթսայի բերանը:— Օ՛յ, օ՛յ, օ՛յ, կրա՛կ է, կրա՛կ: Երբեք չփորձես ուտել այսպիսի տաք ճաշ: Կերակուրը պիտի կիսատաք լինի, տղա՛ս, պիտի ոչ թե այրի լեզուդ, այլ՝ փայփայի: Եվ դու ուշադրությունդ պիտի ուղղես ծամելու վրա և ոչ թե՝ փչելու: Մեր ժամանակներում ոչ ոք չի պահպանում ուտելու ճիշտ կարգը: Չեն ծամում կամ ծամում են օձի պես: Իսկ օձը, ինչպես երևի դու գիտես, ողջ-ողջ կուլ է տալիս իր զոհին: Հետո չարչարվում է, ո՜նց է չարչարվում: Գալարվում է, փորը քսում քարերին, հողին ու այդ կերպ է միայն մարսում կուլ տվածը: Ագահ ու ծույլ արարածներ են օձերը: Բոլոր կենդանիները, մարդիկ, ուտելիք գտնելու համար աշխատում են, քրտինք են թափում, իսկ դրանք, այդ ծույլ արարածները տեղից չեն շարժվում: Սպասում են այնքան, մինչև որսը ինքն է գալիս ու մտնում նրանց բաց բերանը: Կարծում ես, որսը խղճո՞ւմ է օձին, կարծում ես, որսը մտածում է, թե սովից կսատկի՞ օձը: Ո՛չ: Նա ինքն էլ չգիտե, թե ուր է գնում և ինչու: Նա ուշքի է գալիս օձի ստամոքսում միայն ու զարմանում է՝ այս ո՞նց եղավ: Եվ նրանք՝ այդ խեղճ զոհերը, ցավ էլ չեն զգում, վախ էլ չեն զգում: Չեն հասցնում: Նրանք միայն զարմանում են: Բոլոր զոհերից ամենաբախտավորները օձի զոհերն են:*

*Ես նրան լավ չէի լսում. ծերուկը մոռացել էր տեղը դնել ճաշամանի կափարիչը, և ես աչքերս չէի կարողանում փախցնել կարմիր ճակնդեղի, դեղին գազարի, սպիտակ սոխի, կանաչիների կտրտանքներից, որոնք գորգ էին կապել ճաշի երեսին:*

*— Եթե մի գդալ լինե՜ր,— բարձրաձայն մտածեցի ես ու երևակայական գդալով մտքումս խառնեցի, քանդեցի ճաշի երեսի գույնզգույն գորգը:*

*— Գդա՞լ,— ժպտաց ծերուկը և այդ ժպիտը կախարդական էր:— Գդա՞լ:— Եթե նա հիմա կախարդական խոսքեր շշնջար ու նրա ձեռքում գդալ հայ-*

# ԻՆՉՈՒ ԵՆ ՁԿՆԵՐԸ ԼՌՈՒՄ

*ԲՈՐԻՍ ԶԱԽՈԴԵՐ*

Մի ժամանակ, շատ հնում, ձկները սիրում էին խոսել, իսկ Կարմրախայտը պարզապես շատախոսի ու բերանբացի մեկն էր:



Եվ այնքան սրա-նրա գլուխը տարավ, որ նրան տեսնելիս բոլոր ձկները հեռու էին փախչում: Ամբողջ ծովում չմնաց մեկը, որ խոսեր Կարմրախայտի հետ:

Լռեց Կարմրախայտը մեկ օր, երկու օր ու այլևս չդիմացավ: Լողաց դեպի ափ. գուցե ափում գտներ մեկին, որն իր հետ կզրուցեր:

Քիթը հանեց ջրից և քիչ էր մնում ուրախությունից խելքը թռցներ. ափում նստած էր մի փրչոտ կենդանի:

— Լսի՛ր, Փրչո՛տ,— ասաց Կարմրախայտը,— ո՞վ ես դու, ի՞նչ ձուկ ես:

— Ի՞նչ ձուկ, ի՞նչ բան,— պատասխանեց Փրչոտը,— ես Ջրասամույրն եմ:

— Ա՜յ թե ինչ: Ես էլ մտածում եմ՝ ի՞նչ գործ ունի ձուկը ցամաքում, հիմար հո չի՞,— ասաց Կարմրախայտն ու լեզուն կծեց:

Բայց Ջրասամույրը չէր նեղացել, միայն շրթունքները լիզեց ախորժակով ու հարցրեց.

— Կարիք կա՞ր ինձ «հիմար» անվանելու, մի՞թե ցամաքում ապրելը վատ է:

— Վատ ասելը քիչ է, բոլորովին ապրելու տեղ չի: Ուրիշ բան է՝ ջրում:

— Իսկ եթե ես լողալ չգիտե՞մ:

— Լողալ չգիտե՞ս,—կարմացավ Կարմրախայտը,— ախր դրանից հեշտ բան չկա: Մտիր ջուրը և լողա՛:

— Իսկ չե՞մ խեղդվի:

— Այդ ո՞վ է ջրում խեղդվում,— ծիծաղից թուլացավ Կարմրախայտը,—մենք՝ ձկներս, ամբողջ կյանքում ջրում ենք ապրում և մեկանից ոչ ոք դեռ չի խեղդվել:

Ջրասամույրը կգույշ ջուրը մտավ, լողա՜ց, լողա՜ց և հանկարծ հարձակվեց Կարմրախայտի վրա:

Հազիվ ազատվեց Կարմրախայտը, պոչի կեսն էլ թողեց Ջրասամույրի բերանում: Ու որոշեց. «Էլ

---

*տընվեր, ես չէի զարմանա: Ես պատրաստ էի հրաշքի: Ես սպասում էի հրաշքի: Ես հրաշք էի ուզում: Եվ հրաշքը կատարվեց: Ծերուկը ձեռքը ծոցագրպանը տարավ, հանեց պսպղացող, ձվաձև, սրածայր, խորունկ, երկարապոչ մի գդալ՝ ճոճեց օդում, և ծառը, նրա ճյուղերը, տերևները, տերևների արանքից թափանցող լույսը փոքրացան, երևացին գդալի գոգի մեջ:*

*— Գդա՜լ,— ապշեցի ես:*

*— Գդա՜լ է, գդա՜լ,— ծիծաղեց ծերուկը և ինձ հավատացնելու համար գդալի պոչը խցկեց մատներիս արանքը,— փորձի՛ր, տես, որ գդալ է:*

*Գդալի պոչը ցավեցրեց մատներս, ես կատաղությամբ խառնեցի ճաշի երեսը, քանդեցի գորգը, հետո թողեցի, որ գդալը սուզվի, զարկվի ամանի հատակին:*

*Ես գդալի սուր ծայրը մոտեցրի բերանիս և տեսա, թե ինչպես բարձրացավ ու իջավ ծերուկի ադամախնձորը: «Նա էլ է սոված,— մտածեցի,— մի գդալ էլ թող ինքն ուտի»: Ծերուկի խոսքերը հիշելով՝ ես ծամեցի, ծամեցի՝ ինչ կար բերանումս և երբ ուզում էի կուլ տալ ծամածը, զգացի, որ ոչինչ չէր մնացել:*

*— Համե՞ղ է,— հարցրեց ծերուկը,— հո շատ թթու չէ՞: Եթե թարմ կաղամբով եփեն, թթու չի լինի:*

*Ես ուզում էի գդալը նրան տալ, բայց նա ինքը խլեց իմ ձեռքից ու գլուխը կախեց կաթսայի վրա:*

*— Յուղի ոչ մի կաթիլ: Ճակատայիններին ընտանիքների համար այսպիսի ճաշ կեփե՞ն, շա՜ն որդիներ,— համարյա բղավեց ծերուկը՝ մի պահ միայն աչքերն ուղղելով ճաշարանի կողմը,— և սա համարում են բո՞րշչ:*

*Նա իրար ետևից մի քանի գդալ բերանը տարավ ու հիմա խոսում էր խեղդվելով.*

*— Բայց դու չհուսահատվես: Մենք՝ ես ու դու ունենք երևակայություն, ունենք ոգևորություն ու այս անհամ, թթու ճաշը կարող ենք դարձնել համեղ, յուղոտ: Դու սիրո՞ւմ ես յուղոտ ճաշ: Սրիկա՜ խոհարար,— գոռաց ծերուկը,— մսի մի կտոր էլ չի գցել: Մի կտոր միսն ափսոսացել է ճակատայինի ընտանիքի համար: Վերցրո՛ւ, վերցրո՛ւ գդալը, տղա՛ս, և երևակայությամբ միս հանիր ամանից: Այդ շանորդի խոհարարը կռվում է մեզ հետ: Նա փորձում է մեր երևակայությունը: Ու մենք պարտավոր ենք հաղթել նրան: Խառնի՛ր այս մսոտ ճաշը, հանի՛ր ամենայուղոտ, ամենամեծ կտոր միսն ու կե՛ր: Իսկ երբ հոգնենք միս ուտելուց, կուտենք մի այլ բան... Ի՞նչ ես դու սիրում:*

*Ես փլավ էի սիրում՝ չամիչով, հավի մսով, խաղողի տերևներով փաթաթած տոլմա էի սիրում՝ մածնով, սխտորով, ձվածեղ էի սիրում՝ վրան շաքար*



երբեք անծանոթների հետ չեմ խոսելու, հատկապես կենդանիների հետ»:

Որոշելը՝ որոշեց, բայց լեզուն քոր էր գալիս: Եվ նորից դեպի ափ լողաց ու քիթը հանեց ջրից: Իսկ ափում մեծ քարի վրա մի սպիտակ, գեղեցիկ թռչուն էր նստած:

— Լսի՛ր,— ասաց Կարմրախայտը,— ի՞նչ գազան ես դու:

— Ի՞նչ գազան, ի՞նչ բան, ես թռչուն եմ, ճայը:

— Որ այդպես է, ինչո՞ւ ես նստել, չես թռչում:

— Մտածում եմ՝ որտեղի՞ց կեր ճարեմ: Քաղցած եմ, իսկ այստեղ ավազից բացի ուրիշ բան չկա:

Իսկ Կարմրախայտը ծիծաղեց, ծիծաղեց ու ասաց.

— Ա՜յ թե հիմար ես դու, ուտելիք ինչքան ուզես կա:

— Որտե՞ղ:

— Մեզ մոտ՝ ջրում: Ինչքան սիրտդ ուզի՝ խխունջ ու որդ կա, խեցգետին: Բայց ամենից համեղը...

Այստեղ Կարմրախայտը ուզում էր լռել, բայց լեզուն ինքնիրեն ասաց.

— ...Ամենից համեղը ձկնիկներն են:

Եվ հազիվ էր խոսքը վերջացրել, երբ ճայը թափահարեց թևերը, թռավ ու բռնեց Կարմրախայտի մեջքի լողակից:

Հազիվ ազատվեց Կարմրախայտը՝ լողակը թողած ճայի կտուցին: Լողաց ծովի խորքը, շունչը տեղը բերեց ու որոշեց. «Էլ երբեք անծանոթների հետ չեմ խոսելու: Երբե՛ք: Ո՛չ գազանների հետ, ո՛չ էլ՝ թռչունների: Ափին էլ չեմ մոտենա»:

Մի կերպ համբերեց, դիմացավ մինչև երեկո, իսկ երեկոյան նորից դեպի ափ լողաց. «Միայն կնայեմ, մի աչքով, տեսնեմ՝ ով կա այնտեղ, բայց չեմ խոսի»:

Քիթը հանեց ջրից, իսկ ափին նստած էր ինչ-որ անծանոթ: Չգիտես, թռչո՞ւն է, թե գազան: Պոչ չունի, փետուրներ չունի: Նայեց, նայեց Կարմրախայտը, ո՜նց է լեզուն քոր գալիս, բայց վախենում է խոսել, պոչն ու մեջքը դեռ ցավում են:

Իսկ Անծանոթը նկատեց Կարմրախայտին և ասաց.

---

ցանած, խորոված բադրիջան էի սիրում, ընկույզի մուրաբա էի սիրում, ես ի՞նչ չէի սիրում: Ես վոդկա չէի սիրում, ես կաղամբի թփով փաթաթած տոլմա էլ էի սիրում, քյուֆթա էի սիրում, տապակած միս ու կարտոֆիլ էի սիրում, ես ի՞նչ չէի սիրում: Հորաքրոջս դատարկ սեղանը չէի սիրում, ես մեր տան ծոպավոր սփռոցով սեղանն էի սիրում, մորս, հորս հետ կերած բոլոր ճաշերն էի սիրում...

Մենք մի-մի գդալ կերանք ամեն ինչից: Ես էլի համեղ կերակուրներ հիշեցի, որ սիրում էի, որ կուզեի ուտել ու հյուրասիրել ծերուկին, բայց կաթսան հանկարծ դատարկվեց:

— Մենք նրան հաղթեցինք,— հպարտությամբ ու ծուլորեն ասաց ծերուկը,— մենք կերանք՝ ինչ ուզում էինք, որովհետև մենք ունեինք ի՜նչ...

— Ոգևորություն,— տխուր ասացի ես, և ինձ թվաց, թե դատարկ կաթսայից դուրս եկավ ու ձեռքերը կանթած դիմացս կանգնեց հորաքույրս:

Նա գդալը ծոցագրպանը դրեց, մոմեղեն մատներով շփեց քիթը և գլուխը դնելով նստարանի թիկնատեղին, փակեց աչքերը:

Իսկ ես, չգիտեմ ինչու, հիշեցի երկրորդ հարկի լուսամուտից եռանկյունաձև ծրար գցող պառավին, որն անձրև գուշակեց: Նա ի՞նչ իմացավ, որ վաղն անձրև է գալու: Պառաված շունը ինչո՞ւ հաչեց լակոտի նման: Եվ, առհասարակ, ինչո՞ւ եմ ես այսքան զարմանում... Հարկավոր է կաթսան առնել, տուն գնալ:



— Բարի երեկո:

Մի կերպ զսպեց իրեն Կարմրախայտը ու չպատասխանեց: Իսկ Անծանոթը ծիծաղեց ու ասաց.

— Ո՞նց էի մոռացել: Ախր ձկները խոսել չգիտեն: Ների՛ր:

Էլ չհամբերեց Կարմրախայտը:

— Ո՞վ խոսել չգիտի, ե՞ս,—վրա տվեց նա:— Այն էլ ո՜նց գիտեմ: Ուզենամ դեռ քեզ էլ կսովորեցնեմ:

— Այ թե ի՜նչ,— զարմացավ Անծանոթը:— Էլ ինչո՞ւ էիր մինչև հիմա լռում:

— Որովհետև խոսք էի տվել՝ ո՛չ թռչունների հետ խոսել, ո՛չ գազանների: Շատ անքաղաքավարի են՝ վրա են հասնում ու կծում: Իսկ դու ո՞վ ես:

— Ես Մարդն եմ:

— Մա՞րդ,— զարմացավ Կարմրախայտը,— չեմ լսել: Դե, որ Մարդն ես, քեզ հետ կարելի է խոսել:

— Ես էլ եմ կարծում, որ կարելի է,— ասաց Անծանոթը,— կըզրուցենք, մինչև ես կարթը սարքեմ:

— Ինչի՞դ է պետք կարթը,— հարցրեց Կարմրախայտը:

— Չեմ ուզում խաբել քեզ,—ասաց Մարդը,— սրանով ես ձկներ եմ բռնելու:



Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Կարմրախայտը շատ խելոք էր, ուստի սկսեց ծիծաղել.

— Ձկնե՞ր, ո՞նց ես փայտով ձուկ բռնելու:

— Կբռնեմ՝ կտեսնես,— ասաց Մարդը:

Մտածեց, մտածեց Կարմրախայտը և ասաց.

— Ասենք, ճիշտ է, մեզ մոտ հիմար ձկներ շատ կան: Այնքան հիմար են, որ փայտով էլ կբռնվեն:

Եվ սկսեց խոսե՜լ, խոսե՜լ, շատախոսե՜ց, պատմեց, թե որ ձուկը որտեղ է ապրում, ինչ է ուտում: Իրեն էլ չմոռացավ: Մի խոսքով, ամեն ինչ պատմեց, դուրս տվեց բոլոր գաղտնիքները:

Եվ քանի որ շատ էր խոսել՝ հոգնել էր ու քաղցած էր: Մեկ էլ տեսավ, որ ուղիղ իր քթի առաջ մի չաղլիկ որդ է լողում: Առանց երկար-բարակ մտածելու կուլ տվեց ու հայտնվեց կարթի ծայրին:

— Դե՛,— ասաց Մարդը,— հիմա ինչպե՞ս վարվեմ քեզ հետ: Ապուր չեփե՞մ:

Իսկ Կարմրախայտի լեզուն վախից կպել էր: Խղճաց մարդը նրան:

— Դե լավ,— ասաց նա,— այս անգամ քեզ ետ կգցեմ ծովը, բայց, տե՛ս, հաջորդ անգամ զգո՜ւյշ եղիր, էլ չեմ խնայի:

Եվ հանեց Կարմրախայտին կարթից ու ջուրը գցեց:

Կարմրախայտը նույնիսկ մոռացավ շնորհակալություն հայտնել: Ինչքան որ ուժ ուներ՝ լողաց, փախավ հեռու և այլևս մոտ չեկավ ափին: Շատախոսությանն էլ վերջ տվեց: Բայց արդեն ուշ էր: Մարդիկ սովորեցին որսալ ձկներին, որովհետև Կարմրախայտի բերանբացության պատճառով արդեն գիտեին ձկների բոլոր գաղտնիքները:

Իսկ ձկները զգույշ դարձան:

Հիմա նրանք միայն իրար հետ են խոսում:

Այն էլ շշուկով: Ահա թե ինչու մենք չենք լսում նրանց:

Փոխադրությունը՝ Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# Չ Թ Չ Թ Ա Ն Ը

ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿ

Իր ստեղծած թռչուններին
Մի օր ասաց ստեղծողը.
«Ով ձեզնից շուտ այս տեղը գա,
Նա կդառնա ինձ տեղակալ
Կամ թագավոր թռչունների»:

Ստեղծողի կոշի վրա
Արծիվն իսկույն վեր է թռչում
Եվ չի զգում, որ մի թռչուն
Նստել է իր պոչի վրա:
Տեղ չհասած՝ հոգնում է նա
Ու նստում, որ հանգստանա:

Այդ ժամանակ Արծվի պոչից
Շուտ պոկվում է ու թռչում է
Խեղճ ու պուճուր այն թռչունը,
Արծվից առաջ տեղ է հասնում,
Ստեղծողի առջև բուսնում:

Ստեղծողը աչքով տեսնում,
Չի հավատում իր տեսածին.
«Ի՞նչ ես ուզում, ասա՛ ինձ, ծի՞տ»:
«Ես քո կանչով այստեղ եկա,
Որ ինձ դարձնես քեզ տեղակալ,
Կամ թագավոր թռչունների»:

Միտք է անում ստեղծողը
Եվ ասում է. «Որ այդպես է,
Գնա՛ ընկիր դեն ու դենը
Եվ այնպիսի ճիպոտ բեր ինձ,
Որ ո՛չ ուղիղ, ո՛չ ծուռ լինի,
Ո՛չ մեծ, ո՛չ էլ պուճուր լինի»:

Այդ օրվանից փոքրիկ ծիտը
Մտցընում է իր սուր քիթը
Ամեն տեսակ ցանկապատի
Ու թփի տակ՝ ի՞նչ է պիտի
Մի այնպիսի ճիպոտ գտնի,
Որ ո՛չ ուղիղ, ո՛չ էլ ծուռ է,
Որ ո՛չ մեծ է, ո՛չ պուճուր է:
Երբ տեսնում է մի նոր ճիպոտ,
Կանգ է առնում ճիպոտի մոտ
Եվ ասում է. «Չէ, չէ, դա չէ,
Չէ, դա չէ, դա չէ, դա չէ, դա»

Ու կոչվում է նա... Չթչթան:

# ԱՆԱՄՈԹ ԲԿԼԻԿԸ

Փարախում կային երկու տասնյակ նորածին գառներ և մի ոչխար: Իրիկնադեմ էր: Գառները իրար ձայնակցելով՝ մայում էին դունչները պարզած դռան կողմը: Գառների հետ դունչը դռան կողմը պարզելով՝ մայում էր նաև ոչխարը: Գառները, որ դռան կողմը նայելով՝ մայում էին, հասկանալի էր. նրանք արդեն քաղցած էին, սպասում էին, թե երբ պետք է արոտից վերադարձող մայրերը, իրար հրմշտելով, դռնից ներս խուժեն և վազեն ամեն մեկը դեպի իր գառնուկը կամ գառնուկները (գառնուկները հաճախ զույգ են ծնվում), որպեսզի իրենք՝ գառնուկներն էլ իրենց հերթին նետվեն դեպի մայրերը և վրա ընկնեն նրանց կաթով լի կրծքերին: Իսկ թե գորշ ոչխարը ինչո՞ւ էր գառներին խառնված, գառների նման մայում, դունչը դռան կողմը պարզած, անհասկանալի էր, և առհասարակ ինչո՞ւ էր նա գառների հետ փարախում փակված, ոչ թե մյուս ոչխարների հետ արոտի գնացած:

Հարցրի հորաքրոջս: Նա պատասխանելուց առաջ դարձավ, զայրացած, զույգ ձեռքով չանչեց ոչխարին.

— Թաղե՛մ ես դրան, էդ անզգամին...

— Ինչո՞ւ, ի՞նչ է արել խեղճ ոչխարը:

— Խեղճ ցավի՛ գա...

Եվ պատմեց ահա թե ինչ:

Այս ոչխարը նախանցյալ տարի մի սիրուն թուխ գառնուկ էր, ինչպես փարախի այս թուխ ու չալ գառնուկները: Անդ տարվա գառների հետ նա էլ մեծացավ, դարձավ ահա այսպիսի խոշոր ոչխար և այս տարի ինքն էլ ծնեց մի գառնուկ: (Հորաքույրս ցույց տվեց ինձ գառներին խառնված մի թուխ թմփլիկ գառնուկ. դա այս ոչխարի գառնուկն էր): Այս տարի մի զույգ գառնուկ ծնեց նաև այս ոչխարի մայրը: Հորաքույրս ցույց տվեց նաև նրա զույգ գառնուկներին. երկու փոքրիկ, նիհար գառնուկներ: Առողջ ծնված գառնուկներ էին դրանք, բայց թե ինչու մյուսներին հավասար աճ չէին տալիս, երկար ժամանակ անհասկանալի էր մնում:

Գարունը բացվեց, առավոտները մայրերին գառնուկներից անջատելով, սկսեցին արոտի տանել մոտակա սարալանջերը: Պետք էր հուսալ, որ այս զույգ գառնուկների մայրը, մյուսների հետ սարի կանաչը արածելով, տուն կվերադառնա մյուսների պես կուրծքը կաթով լիքը և նրա գառնուկները նույնպես արագ կազդուրվելով, կսկսեն լավ աճ տալ:

Սակայն անցնում են օրեր և գառնուկները սպասածի պես առաջ գնալու տեղ դարձյալ ետ են գնում: Ի՞նչն էր պատճառը: Հորաքույրս հետևում է և նկատում, որ այդ զույգ գառնուկների մայրը, որ նաև այս ոչխարի մայրն է, արոտից վերադառնում է ոչ թե լիքը, այլ՝ դատարկ կրծքով: Մյուս մայր ոչխարները առատ կաթ են բերում իրենց գառնուկների համար, և գառնուկները լավ սնվում, լավ աճում են, օրն օրին թըմփլիկանում, իսկ սա ոչինչ չի բերում իր ծծկերներին: Հորաքույրս հովվին հարցնում է պատճառը: Հովիվն էլ իր հերթին հետևում է, և ահա թե ինչ է պարզում: Այս ոչխարը՝ ինքն արդեն գառնուկի տեր, իր մոր հետ արոտի գնալով, արոտավայրում, հենց որ տեսնում է մոր կուրծքը կաթով լցվեց, ինչպես գառնուկ ժամանակ էր անում, չոքում է, վրա ընկնում մոր կրծքին, ծծում ամբողջ կաթը, մոր կուրծքը դատարկում, իր նորածին քույրերի բաժին կաթը անամոթ բկլիկը գողանում, իր կուրծքը լցնում կաթով, բերում իր միջնեկի համար:

Այս հայտնի դառնալուց հետո, որպեսզի նա այլևս չկարողանա կողոպտել իր փոքրիկ քույրիկներին, հորաքույրս ստիպված նրան անջատել էր մորից, գառների հետ փակել փարախում: Այժմ հասկանալի էր, թե ինչու էր գառների հետ նա էլ դունչը պարզած դռան կողմը, մայում: Նա էլ իր մորն էր սպասում, որ վրա ընկնի նրա լիքը կրծքին: Անամո՛թ բկլիկը:

Բոլի՛ց չէր ամաչում:

— Եվ սա այսուհետև մնալու է գառների հե՞տ,— հարցրի հորաքրոջս:




— Չէ՛, աքսորելու եմ սրան, հողե՛մ սրա գըլուխը. ուղարկելու եմ հեռու մի գյուղ՝ ծանոթ մի մարդու մոտ, թող խառնվի նրա ոչխարներին, մնա այնտեղ, մինչև գառները մեծանան, ոչխարը կաթից կտրվի:

— Բայց, հորաքրո՛ւր, այսպիսի ոչխարներ առհասարակ լինո՞ւմ են, թե՞ սա մի բացառիկ դեպք է:

— Շատ քիչ, բայց պատահում է:

Ս. Ս.

# ՀԱՅԱՑՔՆԵՐՆ ՀԱՌԱԾ ՀԱՅՐԵՆԻՔԻՆ

Բեյրութի Հազմիե կոչվող արվարձանում մի մեծ շենք կա, որն իր գեղեցիկ, արդիական կառուցվածքով առաջին իսկ հայացքից զատվում է շրջապատի շենքերից և գրավում այցելուի ուշադրությունը:

Շենքի ճակատին գրված է՝

ՀԱՅԿԱԿԱՆ
ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ
ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹՅԱՆ
ԴԱՐՈՒՀԻ ՀԱԿՈԲՅԱՆ
ԱՂՋԻԿՆԵՐՈՒ
ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Ո՞վ է. Դարուհի Հակոբյանը, որի անունով կոչվում է աղջիկների միջնակարգ այս դպրոցը: Գուցե անվանի մի հայուհի՞, իր գործերով հռչակված մի անձնավորությո՞ւն:

Իհարկե, ո՛չ: Բայց այնուամենայնիվ նրա անվան հետ կապված պատմությունը հուզիչ է:

Դարուհի Հակոբյանը իզմիրցի մի ընտանիքի, Թագվոր և Երանուհի Հակոբյանների վաղաժամ մահացած դուստրն է: Նրա ծնողները իրենց սիրելի դստեր հիշատակը հավերժացնելու համար, շքեղ դամբարանի փոխարեն, որոշում են կառուցել մի որբանոց: Նրանց այս ազնիվ որոշման մասին գրվել է նույնիսկ Իզմիրում լույս տեսնող «Արևելյան մամուլ» շաբաթաթերթում, 1897 թվականին: Այդ տարիներին Արևմտյան Հայաստանում և Կիլիկիայում տեղի ունեցած կոտորածների հետևանքով որբացել էին բազմաթիվ հայ մանկիկներ, և Դարուհու ծնողները դժվար թե գտնեին ավելի վսեմ գործ, քան որբացած մի խումբ երեխաների արցունքը չորացնելը, նրանց համար մի ապաստարան կառուցելը:

Սակայն այդ տարիներին հնարավոր չի լինում իրականացնել որբանոց հիմնելու որոշումը: Տարիներ հետո միայն, կտակված գումարով, Հայկական Բարեգործական ընդհանուր միությունը Բեյրութում հիմնում է, բայց ոչ թե որբանոց, այլ աղջիկների միջնակարգ դպրոց: Ժամանակի ընթացքում որբերը քչացել էին, բայց և արտասահմանում ապրող հայերի համար երևան էր եկել մի նոր հոգս. հայ երեխաներին հայ պահելու, հայ մեծացնելու, մայրենի լեզվով կրթություն տալու հոգսը:

Արդեն երեսուն տարի է, ինչ «Դարուհի Հակոբյան» դպրոցը սփյուռքի համար պատրաստում է զարգացած հայուհիներ, որոնք գործուն մասնակցություն են բերում սփյուռքի ազգային հասարակական կյանքին:

Իր գոյության ընթացքում դպրոցը տվել է 450 շրջանավարտ, որոնցից 65-ը հնարավորություն են ունեցել շարունակելու իրենց ուսումը տարբեր համալսարաններում: Նրանցից մեկը ավարտել է Երևանի բժշկական և մեկն էլ պոլիտեխնիկական ինստիտուտը: «Դարուհու» շրջանավարտներից 50-ը աշխատում են որպես ուսուցչուհի, 15-ը հիվանդապահուհիներ են:

Դպրոցն այժմ ունի ավելի քան 250 աշակերտուհի: Այս դպրոցն են հաճախում հայկական տարբեր նախակրթարաններ ավարտած այն աղջիկները, ովքեր ցանկանում են միջնակարգ կրթություն ստանալ: Վարժարանի ուսումնառության շրջանը չորս տարի է՝ 7—10-րդ դասարանները:

Այստեղ հասարակական կարգով գործում են զանազան խմբակներ, որտեղ աշակերտուհիներն ընդգրկվում են ըստ իրենց նախասիրությունների, այսպես օրինակ՝ երաժշտական, արվեստի, գիտական, գրական, պարտիզամշակության, գրադարանի, անգլերենի և այլ խմբակներ, որոնցից յուրաքանչյուրը ղեկավարում է վարժարանի ուսուցչուհիներից մեկը:

Հիշյալ խմբակներից ամեն մեկը պարտավոր է տարեկան մի քանի հետաքրքրական միջոցառումներ կազմակերպել. ընտրում

են այնպիսի միջոցառումներ, որոնք ավելի ևս խորացնեն հայ մշակույթի հանդեպ սերը աշակերտուհիների մեջ: Վերջին տարիներին գրական և երաժշտական խմբակների նախաձեռնությամբ դպրոցում նշվել են Արամ Խաչատրյանի, Եղիշե Չարենցի, Երևանի հիմնադրման, Կոմիտասի և Հովհաննես Թումանյանի հոբելյանները: Վարժարանում ամեն տարի տոնվում է նաև մայրերի օրը, ուսուցիչների օրը:

Այդպիսի հանդեսների ժամանակ, եթե Երևանից մի հյուր գտնվի «Դարուհի Հակոբյան» վարժարանում, կմոռանա, որ ինքը Հայաստանից հեռու գտնվող մի դպրոցում է, քանի որ աշակերտուհիները երգում են հայաստանյան երգեր, արտասանում հայ դասական և ժամանակակից բանաստեղծների գործերը, պարում հայկական պարեր, մի խոսքով՝ ապրում ու շնչում են հայրենիքով:

Դպրոցում հաճախակի կազմակերպվում են նաև հայերեն շարադրության, ասմունքի, ուղղագրության մրցույթներ:

Վարժարանի աշակերտության կյանքի, տեղի ունեցող գեղարվեստական, մարզական բոլոր միջոցառումների մասին գրվում է դպրոցական տպագիր տարեգրքում, որը կոչվում է «Հորիզոն» և լույս է տեսնում ամեն ուսումնական տարվա ավարտին: Այստեղ են տպագրվում նաև աշակերտուհիների լավագույն շարադրությունները:

«Դարուհի Հակոբյան» վարժարանն ունի իր շրջանավարտների միությունը, որի անդամները՝ նախկին դարուհիցիներ, զանազան ձեռնարկների միջոցով նյութական և բարոյական օժանդակություն են ցույց տալիս իրենց սիրելի դպրոցին: Նրանցից ոմանք հանդես են գալիս նաև «Հորիզոն»-ի էջերում: Վարժարանի շրջանավարտ Մարի Գասպարյանը, որն այժմ ունի քիմիական գիտությունների դոկտորի աստիճան, 1969 թվականի տարեգրքում, որը նվիրված է վարժարանի 30-ամյակին, գրում է.

«Կասկածե վեր է, որ առանց հայ մշակույթի և պատմության խոր ճանաչումին, առանց ներկա Հայաստանի գոտեպնդող իրականության հետ սերտ ծանոթացման, կարելի չէ հայրենասեր ըլլալ, կարելի չէ մնալ հայ՝ սփյուռքի փորձություններու դիմաց»:

Այս ճշմարտությունը լավ են գիտակցում դպրոցի տնօրինուհին՝ Սոսի Պետիկյանը և ուսուցիչները: Տարեցտարի ավելի է ամրապնդվում դպրոցի կապը հայրենիքի հետ: Այստեղից նրանք ստանում են դասագրքեր, գեղարվեստական գրքեր, երգեր, լուսանկարչական ցուցահանդեսներ: Ամեն տարի վարժարանի սանուհիների մի խումբ ամառային հանգիստը անց է կացնում Հայաստանի պիոներական ճամբարներում, դպրոցի ուսուցիչներից մի քանիսը ամռան ամիսներին Երևանում մասնակցում են վերապատրաստման դասընթացներին:

Հայրենիքից թեև հեռու, բայց հայացքները հառած հայրենիքին, նրանք հոգով, սրտով հայրենիքի հետ են:

ՇԱՔԵ ՎԱՐՍՅԱՆ



«Դարուհի Հակոբյան» վարժարանի շենքը



# ՄՐՋՅՈՒՆ ԱՋՈՆ ԵՎ ՃՊՈՒՌ ԴԵՆԸ

(Ըստ ՋՈՆ ՉԻԱՐԴԻԻ)

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

1

Անտառի եզրին,
Բազմահարկ բնում,
Մրջյուն Աջոն էր
Իր համար կենում:
Ամեն առավոտ
Ծեր կոճղին մոտիկ
Նա կանգնում էր շարք
Ծուռտիկ ու մուռտիկ,
Իր նման սևուկ
Մրջյունների հետ:
Կտրում էր հետո
Ճամփա, արահետ
Եվ, ամբողջ օրը
Լուռ իրա բանին,
Պաշար էր դիզում
Աջոն օրն օրին:
Հոգնած ու քրտնած,
Քարշ տալով բեռը,
Ձայնում էր.
— Առա՜ջ,
Մոտ է ձմեռը:

2

Շուրջը խշշում է
Անտառը թավուտ,
Զնգում է վերից
Երկինքը կապույտ,
Ծաղիկներն իրար
Գլխով են անում,
Հավքերի երգից
Մարդ չի կշտանում...
Բայց դե մեր Աջո՜ն
Փոշոտ ճամփին է,
Գլուխը կախած՝
Իրա բանին է:
Դիզում է անվերջ
Ձմեռվա պաշար
Ու կոկորդով մեկ
Ձայնում անդադար.
— Դե՜, մի՛ ծուլանաք,
Առա՜ջ, եղբայրնե՛ր,
Առջևում ձյուն է,
Առջևում՝ ձմեռ:

3

Այդպես էլ Աջոն
Կապրեր իր համար,
Թե թռի-վռի
Մի քույր չունենար:
Ամառվա մի օր
Իրիկնադեմին
Մոտիկ բացատում
Մեր օրիորդ Անին
Հանդիպեց Դենին՝
Ճպուռին խելառ,
Որ նվագում էր
Անհոգ իր համար:
Չգիտես ինչու
Մեր օրիորդ Անին
Հավանեց, սիրեց
Հենց այդ անբանին:

4

Աշունն հաջորդեց
Ամառվա շոգին:
Անտառն իր ոսկին
Շաղ տվեց հողին:
Իսկ ջութակն էլի
Երգում էր, երգում.
«Ամեն ինչ իր հերթն
Ունի աշխարհում:
Խոտը դեղնում է,
Համրանում առուն,
Եվ միայն երգն է,
Որ չի ծերանում»...
Մինչդեռ մեր Աջոն,
Քարշ տալով բեռը,
Ձայնում էր.
— Առա՜ջ,
Մոտ է ձմեռը:—
Իսկ ջութակը՝ ի՞նչ,
Ուտելիք հո չի՞...



Գրողի ծոցը
Թող գնա կորչի։
Կանչեց քրոջը.
— Տո՛ւն արի, աղջի՛,
Ջութակահարդ
Շուտով կսառչի։
Նրա հետ դու էլ,
Քույրիկս, այ, տե՛ս,
Անտեղի պիտի
Սառչես ու կորչես։—
Ձայն տվեց քույրը.
— Սիրելի՛ եղբայր,
Տուն չեմ գա, նանին
Բարևներս տար։

5

Եվ իսկապես որ,
(Ինչպե՞ս գուշակեց),
Եղանակն արդեն
Ցրտել սկսեց։
Էլի մի փոքր,
Ու մեկ էլ՝ խնդրեմ,
Բուք, ձյունաթմբեր՝
Ուղիղ քո տան դեմ։
Սկզբում անտես
Ու կամաց-կամաց
Սնդիկն սկսեց
Սողալ, իջնել ցած։
Եվ մրջյուն Աջոն
Անաղմուկ ու լուռ,
Նախքան կփակեր
Լուսամուտ ու դուռ,
Նայեց չորս կողմը.
Ամենուր ճերմակ
Ձյունը փռել էր
Հսկա մի վերմակ։
Լուռ են դաշտերը,



Լուռ են ձոր ու կիրճ,
Չի լսվում անուշ
Ձայնը ջութակի։
— Վե՛րջ,— ասաց Աջոն,
Տխուր հառաչեց,—
Ջութակահարը
Իր շունչը փչեց։
Իսկ ես ապահով,
Հանգիստ, անկարոտ,
Հիմա կիջնեմ իմ
Պաշարների մոտ։

6

Ահա լավ պտուխտ
Թիթեռնիկներից,
Ահա մակարոն
Ծաղկաթերթերից...
Ուզում էր արդեն
Նա նստել ճաշի,
Բայց ոնց որ մեկը
Փեշիցը քաշի։
— Ի՞նչ եմ անում... Լա՜-ա-ավ,
Կուշտ կերա, բարի-ի-ի՜,
Իսկ եթե ձմեռն
Հանկարծ երկարի՞...
Ես պետք է ուտեմ
Ոչ այդպես, բուռ-բուռ,
Ես պետք է ուտեմ
Օրը մի փշուր։
Դրա փոխարեն
Ես եկող տարի
Ո՛չ հոգս կունենամ
Եվ ո՛չ էլ կարիք։—
Ինչ եմ ասել՝ խե՜լք,
Եվ գլխի մե՜ջ է...
Ձմեռը ձգվեց
Մինչ մարտի վերջը։
Միայն ապրիլին
Անտառը նորից
Արթնացավ ձմռան
Իր խորունկ քնից։
Եվ երբ գարունը
Ցրտերը տարավ,
Աջոն իմաստուն
Իր բնից ելավ։
Քաղցած ու գունատ,
Նիհար-նիհարիկ,



Քարշ եկավ նորից
Ուտելիք ճարի։
Դողդողում էին
Խեղճի ձեռ-ոտը,
Բայց ձայնեց.
— Առա՜ջ,
Ձմեռը մոտ է։—
Սակայն ի՞նչ է սա.
Առվի եզերքից
Ականջին հասավ
Զնգոցը երգի։
Հնչում էր գարնան
Անուշ մեղեդին։
Օծված արևի
Շողերով դեղին,
Չիք սոճիները
Անտառի փեշին
Ճոճվում էին մեղմ
Երգի հետ հուշիկ։
Խոնարհվում էին
Կաղնիները սեգ,
Օրորվում էին
Ծաղիկ, խոտ ու սեզ։
Խելառ Դենն էր այդ
Երգում ոգեշունչ,

Ժպիտներ էին
Ծաղկում նրա շուրջ:
Մեկ էլ մեր Աչոն
Այդ Դենի կողքին
Նկատեց կանգնած
Անծանոթ մեկին:



Աչո՛, ակնոցդ
Գրպանից հանի՛ր.
Ախր այդ նա է,
Քո քույրիկ Անին...
Քրոջ հետ մտքում
Տալով կռիվ-վեճ,
Նա, չը՛մփ, ընկավ
Ցեխաջրի մեջ...

7

Հիմա այստեղ
Վերջին մասում,
Ականջ արեք՝
Ինչ եմ ասում:

Կարել կտաս
Ձեռք-ձեռք շորեր,
Կխորովես
Չաղլիկ լորեր,
Կդիզես կալք,
Կդնես տուն,
Մեկ է՝ չկա
Ուրախություն:
Առանց ջութակ
Եվ առանց երգ
Մեր աշխարհը
Կլիներ մերկ,
Կլիներ պաղ
Ու անալի,
Պինդ փակած դուռ
Անբանալի:
Հողագունդն էլ,—
Այս արդեն լուրջ,—
Չէր դառնա իր
Առանցքի շուրջ:
Ասեմ նաև,
Ահավասիկ,
Չմոռանաք
Դուք այդ մասին:
Երբ ձմեռ է,
Բուք է դրսում,
Ճպուռներն են
Նեղվում, մրսում:
Այնպես էլ է
Հաճախ լինում՝
Ոմանք ցրտին չեն դիմանում:
Բայց կա երգը
Հավերժական.
Երբ ծագում է
Արփին գարնան,
Դաշտ ու անտառ,
Հավք ու զեռուն
Այդ երգն են միշտ
Մտաբերում:
Մի գաղտնիք էլ
Պիտի բանալ,
Թե ուզում եք
Խելոքանալ.
Շատ վատ բան է,
Ասեմ վստահ,
Երգը լսել
Ցեխում նստած:

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

*ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ*

# ԱՐՏԱՍՈՎՈՐ ԱՐՇԱՎ

Հին աշխարհում մի սրամիտ և արկածախնդիր իշխան է եղել: Ասում են, որ մի անգամ նա իր մոտ է կանչել երկու ձիավորների և դիմել այսպես.

— Բարեկամնե՛րս, տեսնո՞ւմ եք այս ոսկե դրամը: Առաջարկում եմ արշավել մինչև այն արմավենին: Ես այս ոսկե դրամը կտամ ձեզնից նրան, ում ձին արմավենուն հասնի վերջինը:

— Միայն այդպես,— ավելացրել է իշխանը,— ես գիտեմ, դա որոշ չափով անսովոր պայման է, բայց՝ այն է, ինչ ուզում էի ասել: Դուք կարող եք սկսել արշավը:

Բնական է, որ հեծյալներից ամեն մեկը ձգտել է ետ պահել իր ձին. շարժվել չափազանց դանդաղ: Բայց շատ չանցած նրանք հասկացել են, որ կանգնելով կամ կրիայի քայլերով առաջ գնալով, ոչինչ էլ դուրս չի գա, ուստի որոշել են հրաժարվել «արշավից», երբ հանկարծ որտեղից-որտեղ հայտնվել է մի իմաստուն ծերունի և հետաքրքրվել նրանց անհանգստացնող խնդրով:

Մեկը մյուսին հերթ չտալով՝ նրանք ծերունուն բացատրել են արշավի արտասովոր պայմանը:

— Գուցե մենք բաժանենք դրամը,— ասել է հեծվորներից մեկը,— կամ պայմանավորվենք իսկապես արշավել, և ում ձին կհասնի վերջինը, ստացած դրամը տա մյուսին:

— Օ, ո՛չ,— ասել է դրվիշը,— ամեն մի գործում պետք է լինել ազնիվ:— Եվ ապա շշուկով խորհուրդ տվել նրանց.

— Թող աստվա՛ծ քեզ օրհնի,— բացականչել են ձիավորներն ու թռել թամբերին և խթանել ձիերը:

Նրանք քառատրոփ արշավել են դեպի արմավենին, քամուց էլ արագ: Հաղթողն ստացել է ոսկե դրամը:

Փորձեք գուշակել, թե ի՛նչ խորհուրդ է տվել ծերունին:

# ՎԱՇՏԱԿԻ ՍՐԱՄՏՈՒԹՅՈՒՆԸ

Ինչ-ինչ հանցանքի համար Վաշտակ անունով մի շինականի կանգնեցրին դատի առջև: Նրան դատում էր 12 հոգուց բաղկացած դատարանը. վեց կին և վեց տղամարդ: Վերջիններս հանեցին իրար հակասող դատավճիռներ: Կանայք Վաշտակին մեղավոր ճանաչեցին և պահանջեցին պատժի առավելագույն չափ՝ մահ, իսկ տղամարդիկ, ընդհակառակը՝ պահանջեցին նրան ազատ արձակել:

Տեսնելով, որ Վաշտակն ունի ապրելու և մեռնելու հավասար հնարավորություն, դատավորը որոշեց հարցը լուծել վիճակահանությամբ: Դատավճիռ կայացնելու այդ արտասովոր մեթոդը հետևյալն էր. վերցնում էին յուրաքանչյուրը 25 սև և 25 սպիտակ գնդիկներ պարունակող երկու թաս, բանտարկյալին, որի աչքերը նախապես կապում էին, առաջարկվում էր թասերից որևէ մեկից հանել մի որևէ գունդ. սևը՝ մահ էր, սպիտակը՝ կյանք: Բնական է, որ բանտարկյալի աչքերը կապելուց հետո, թասերի տեղերը փոխում և յուրաքանչյուր թասում գնդիկներն ուշադիր խառնում էին:

— Օ՜, մե՛ծ դատավոր,— հանկարծ բացականչեց Վաշտակը ընկնելով նրա ոտքերը,— բավարարե՛ք իմ վերջին խնդրանքը. նախքան իմ աչքերը կապելը թույլ տվեք ինձ վերադասավորել թասերի գնդիկները, որից հետո պարտավոր եմ ընտրելու թե՛ թասը և թե՛ գունդը:

— Դուք ի՞նչ եք կարծում,— դիմեց դատավորը իր ետևում նստած պալատականին,— դա կմեծացնի՞ դատավճռից խուսափելու հնարավորությունը:

— Կարծում եմ՝ ո՛չ,— պատասխանեց պալատականը, որն իրեն համարում էր մաթեմատիկային ծանոթ մարդ,— կա 50 սպիտակ ու 50 սև գնդիկ, և քանի որ նա չի կարող տեսնել դրանք, ապա մնում է նույն հնարավորությունը: Այդ կախում չունի այն բանից, թե գնդերն ինչպես են բաշխված երկու կամ ցանկացած թվով թասերի մեջ:





Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

«Գեղեցիկ,— մտածեց դատավորը,— քանի որ դա ոչ մի տարբերություն չի մտցնում, ապա ինչո՞ւ չբավարարենք դատվողի խնդրանքը»:

— Մոտեցի՛ր և վերադասավորի՛ր գնդերը,— ասաց դատավորը Վաշտակին, որ շարունակում էր մնալ ծնկաչոք:

Վաշտակը վեր կացավ, մոտեցավ սեղանին և ձեռքերը տարավ դեպի թասերը. նա առանձնապես ոչինչ չարեց. սկզբում բոլոր գնդերը լցրեց մի թասի մեջ, հետո վերցրեց մի սպիտակ գունդ և ետ դրեց դատարկված թասի մեջ: Այդ միամիտ վերադասավորությունը մեծացրեց նրա ազատվելու հնարավորությունը: Վաշտակի աչքերը կապելուց հետո, նա կունենա սպիտակ գնդիկով թասն ընտրելու 50 տոկոսի հնարավորություն (որը կտար ազատություն), հակառակ դեպքում, երբ ընտրեր մյուս թասը, նորից կունենար 99-ից 49 (համարյա 50 տոկոս) սևի փոխարեն սպիտակ գնդիկ վերցնելու հնարավորություն:

Պատմությունը լռում է և ոչինչ չի ասում այն մասին, թե Վաշտակի սրամտությունը հնարավորություն տվե՞ց նրան խուսափել մահապատժից, թե՞ ոչ:

# ԱՄԲԵՐԴ

Շրջեցեք պատմական Գեղարքունիքն ու Վայոց-Ձորը, Գուգարքն ու Տաշիրը, Արագածոտնը ու Սյունիքը: Ամենուրեք կհանդիպեք լեռներին թառած պատմական ամրոցների մնացորդների, որոնց թիվը Հայաստանում շատ ու շատ է, իսկ կառուցման ժամանակներն էլ տարբեր՝ նախաուրարտական, ուրարտական, ստրկատիրության և ֆեոդալիզմի դարաշրջանների: Կանգնեցված անմատչելի տեղերում և ապահովված պաշտպանական հզոր կառուցվածքներով այդ ամրոցները ժամանակին անգնահատելի դեր են կատարել հայրենի երկիրը ոսոխներից պաշտպանելու գործում:

Միջնադարյան Հայաստանի ամրոցների մեջ Ամբերդը կամ Համբերդը թերևս ամենատիպականն ու համեմատաբար պահպանվածն է: Այն գտնվում է Արագած լեռան հարավային լանջին (Աշտարակի շրջանի Բյուրական գյուղից 5—6 կմ դեպի հյուսիս-արևելք): Նրա կառուցվածքների գորշագույն ուրվագծերը նկատելի են բավականաչափ հեռվից, դեպի Արագած լեռան գագաթը տանող խճուղու առանձին հատվածներից:

Թեև հնագիտական պեղումները ցույց են տվել, որ ամրոցն այստեղ գոյություն է ունեցել դեռևս անհիշելի ժամանակներից, սակայն պահպանված կառուցվածքները հիմնականում ստեղծվել են 10—11-րդ դդ. Բագրատունյաց թագավորության ժամանակ, իսկ հետագա 12—13-րդ դդ. Հայաստանի նոր տերերը՝ Զաքարյանները վերանորոգել են դղյակը, լրացրել ու ամրացրել են պարիսպները:

Ամրոցը տարածվում է ավելի քան 5 հեկտար բնականորեն խիստ պաշտպանված մի հրվանդանի վրա, որին սահմանակից են Ամբերդի (հարավ-արևմտյան կողմից) և Արխաշյանի (հյուսիս-արևելյան կողմից) անդնդախոր կիրճերը: Սրանց հատակով ոլորապտույտ հոսքով, հրվանդանի սրանկյուն վերջավորության տակ միախառնվում են հիշյալ լեռնային գետակները, որպեսզի ավելի ցածում թափվեն Քասախ գետը: Այսպիսով, տեղանքը միանգամայն անմատչելի էր ու խիստ համապատասխան ամրոցաշինության պահանջներին: Այդ է պատճառը, որ Ամբերդը պատմության մեջ առավել անառիկ ամրոցի համբավ ուներ և կարևոր դեր է կատարել ազատագրական կռիվների ընթացքում:

Որպես միջնադարյան բնական ամրոց, Ամբերդը բաղկացած էր երկու հիմնական մասերից՝ դղյակից կամ վերին ամրոցից և բուն ամրոցից կամ ներքին ամրոցից: Յուրաքանչյուրը դրանցից ապահովված էր պաշտպանական պարսպապատերի իր սիստեմով՝ կառուցված կարծր ու կիսամշակ որձաքարով, կրաշաղախի միջոցով:

Դղյակը տեղադրված է հյուսիսային բարձրադիր մասում և իշխող դիրք ունի ողջ ամրոցի նկատմամբ, զբաղեցնում է շուրջ 700 քմ տարածություն, իր պարագծով ամփոփվել է մոտ 15 մ բարձրություն, 2 մ հաստություն ունեցող խուլ և բրգավոր պարսպապատերի մեջ:

Երկհարկանի դղյակի առաջին հարկը հատկացված է եղել օժանդակ սենյակների (որոնցից մեկում սարքավորված էր ջրավազան, ջրի մշտական պաշար ապահովելու համար): Լայն և հանդիսավոր աստիճանները սկսվում են ամրոցի կողմից բացվող դռնից և տանում են երկրորդ հարկը, որտեղ գտնվում էին բնակելի սենյակները, սեղանատունը, հյուրա-



Ամբերդ. ամրոցի հյուսիս-արևմտյան կողմի պատերը:



*Ամբերդ. ամրոցի տեսքը բերդի կողմից*

սենյակը և այլն: Երբ այժմ կիսավեր դղյակի հարավակողմյան սենյակների պատուհաններից դիտում ես հմայիչ ու բազմապլան լեռնային տեսարանները ու հեռվում փռված մշուշապատ Արարատյան դաշտը՝ պսակված հավերժորեն ձյունապատ Արարատի գագաթներով, հիանում ես ամրոցը կառուցողների նաև գեղագիտական բարձր ճաշակով: Իրոք որ կարողացել են հարմար տեղանք ընտրել, միմյանց հետ սերտորեն համաձայնեցնելով պաշտպանական ու գեղագիտական պահանջները:

Բուն կամ ներքին ամրոցը տարածվում էր դղյակի հարավային փեշերից սկսվող ու դեպի արևելք զգալի թեքությամբ ձգվող սարահարթի վրա, պարագծով նույնպես շրջապատված պարիսպներով, որոնք անհամեմատ ավելի վատ են պահպանվել: Եթե դեպի ամրոց բարձրանալու լինենք Արխաշյանի կիրճից սկսվող ոլորապտույտ կածանով, ապա կհանդիպենք կամարակապ դարբասին, որը հիմնական մուտքն է հանդիսացել: Դրանցից բացի, ինչպես ամրոցը, այնպես էլ դղյակը, պաշարման դեպքերի համար ապահովված էին հատուկ գաղտնուղով ու մուտքով: Իջեք Ամբերդի կիրճի չափազանց թեք լանջերով ու կհանդիպեք սալածածկ գաղտնուղու պահպանված հատվածին: Նույն կիրճի վրա էր բացվում նաև դղյակի գաղտնի մուտքը:

Ամրոցն ընդգրկող տարածության վրա կիսավեր ու բազմաբնույթ շատ կառուցվածքներ կան: Դրանցից առավել կարևորները ու համեմատաբար լավ պահպանվածները եկեղեցին ու բաղնիքն են:

Եկեղեցին 1026 թ. կառուցել է տվել Անիի հերոսական պաշտպանության կազմակերպիչ և հայոց զորքերի սպարապետ՝ Իշխան Վահրամ Պահլավունին: Այն պատկանում է հայկական «Գմբեթավոր սրահ» կոչված եկեղեցական շենքերի տիպին:

Եկեղեցու արտաքին ճարտարապետությունը պարզ է, անպաճույճ: Իր ճարտարապետական-գեղարվեստական հատկանիշներով Ամբերդի եկեղեցին լավագույններից է Բագրատունյաց շրջանի հուշարձաններից:

Բաղնիքը տեղադրված է եկեղեցուց և դղյակից դեպի հարավարևելք և միջնադարյան Հայաստանի աշխարհիկ ճարտարապետության ուշագրավ հուշարձաններից է: Ունի ուղղանկյուն հատակագիծ, երկայնական առանցքի ուղղությամբ հաջորդաբար տեղավորված են հանդերձարանը, լողարանը և ջեռուցարանը, դրանցից առաջին երկուսը ծածկված են երդիկավոր գմբեթներով: Սառը ջուրը՝ դղյակի փեշին կառուցած ջրամբարից ինքնահոսով բերվում էր դեպի կրակարանի վրա տեղավորված կաթսան, ապա տաքանալուց հետո՝ խողովակներով բաշխվում լողասրահ:

Բաղնիքի ջեռուցումը կատարվում էր սյուների վրա բարձրացված հատակի տակով և պատերի մեջ հարմարեցված ուղղաձիգ խողովակներով, կրակարանի բոցն ու տաք գազերը մղելու միջոցով: Անհայտ է, թե երբ բաղնիքի շենքին, հանդերձարանի կողմից կցվել է լրացուցիչ մի սենյակ՝ հատակին ավազան: Ամրոցաշինության խստապահանջ օրենքներով յուրաքանչյուր ամրոց, որպեսզի այն իսկապես անառիկ լիներ ու կարողանար դիմադրել տևական պաշարման ժամանակ, պետք է ապահովված լիներ անխափան ջրամատակարարմամբ: Ամբերդի ջրամատակարարման գիծը քաշած էր Արագածի լանջերի սառնորակ աղբյուրներից: Այն ինքնահոսով նախ մտնում էր դղյակ, ապա անցնում ամրոցի տերիտորիան, ուր դղյակին անմիջապես մոտ, հարավ-արևելյան կողմում սարքավորված էր մի ջրավազան: Այստեղից էր կատարվում ավելի ցածր գտնվող բաղնիքի ու ողջ ամրոցի ջրամատակարարումը: Պեղումներով հայտնաբերված են ջրամատակարարման գծին պատկանող թրծված կավից ու երկաթից պատրաստված խողովակներ, բրոնզե փականներ, ստուգման հորեր և այլն:

Ջրամատակարարման գծի խափանման դեպքում պաշարման ժամանակ հնարավոր էր ջուր հայթայթել նաև Ամբերդի գետակից, օգտվելով դեպի այն իջնող գաղտնուղուց:

Այսպիսին էր, ընդհանուր գծերով, միջնադարյան Հայաստանի անառիկ ամրոցներից մեկը՝ Ամբերդը: Նրանում շատ ուսանելի բաներ կան ֆեոդալական հասարակության կյանքը հասկանալու համար: Արժե ամառային տուրիստական ուղերթներից մեկն էլ Ամբերդն ընտրել:

*Պրոֆ. ՎԱՐԱԶԴԱՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

# ՀՈՎԱԶ

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*

Այս գազանին հայերը ասում են նաև ընձառյուծ: Գլուխը՝ կլոր, վիզը՝ կարճ, հասակը՝ ոչ բարձր, մարմինը և պոչը՝ երկար: Խոշորը փոքր երինջի չափ է լինում: Նրա շիկավուն մորթու վրա, ցրիվ են եկած վանդակաձև մեծության սև խալեր ու պիսակներ, իսկ ամենից շատ ու խիտ՝ թիկունքին՝ ողնաշարի երկարությամբ:

Սուր-սուր ճանկերը ծալած՝ կատվի նման հուշիկ ու փափուկ քայլում է ժայռերի արանքներով և, որսի հանդիպելիս, կատվի նման նախ կուտապ է գալիս, ապա ցատկում իր զոհի վրա:

Ի՞նչ է որսում: Մեր երկրում ամենից շատ՝ վայրի այծեր: Մեր երկրում այժմ ավելի շատ կա, կան նաև վայրի ոչխարներ, նապաստակներ, ինչո՞ւ նրանց որսով չի զբաղվում: Չի կարող, վատ է վազում, թվածըս կենդանիներից ոչ մեկին վազքով հասնել չի կարող: Բայց քարայծը հո վատ չի՞ վազում: Նրա բանն ուրիշ է, նա իր կյանքի մեծ մասն անց է կացնում ժայռերում, անձավներում, խոռոչներում, քայլում է ժայռի ճակատի նեղ շավիղներով, ուր և դարանակալում է ահռելի գազանը և մեկ թռիչքով ցատկում է զոհի վրա, ժանիքները խրում նրա վիզն ու գործի դնում նշտարի նման սուր ճիրանները...

Մի անգամ Դժողքի ձորի մի ժայռի վրայից անծանոթ մռնչյուն լսեցի. «Ուա՜խկ, ուա՜խկ-ուա՜խկ...» նայեմ տեսնեմ հովազը սալին մեկնված և ականջները դեպի առաջ սրած՝ նայում է ներքևում փախչող քարայծերի հոտին: Երկար պոչով մտրակում էր սալին ու գոռում, բայց չէր փորձում հետապնդել փախչող որսին: Գիտեր, որ չի հասնի, իր ոտքերը կարճ են և երկար վազքի անսովոր:

Այնուամենայնիվ, հովազը բավական վնաս է հասցնում մեր վայրի կճղակավորներին. ուտում է Խոսրովի անտառում բաց թողած եղջերուներին, Ուրծի լեռներում ոչնչացնում է քարայծերին, վայրի խոզեր ու խոճկորներ է որսում Զանգեզուրի լեռնաշղթայի հարավային լանջերին: Բայց քանի որ բնության մեջ քիչ է մնացել այդ գեղեցիկ գազանից, ուստի նրան ոչնչացնել չի կարելի: Մանավանդ որ իր տարածած սարսափով վայրի խոտաճարակներին պահում է մշտական զգոն վիճակում, նաև ոչնչացնում է թույլ ու հիվանդ կենդանիներին, որով և վնասի հետ մեկտեղ որոշ օգուտ էլ է տալիս մեր կենդանական աշխարհին:

Կենդանաբանները կարծում էին, որ հովազը Հայաստանի բնիկ կենդանիներից չէ և որ նա մեզ մոտ է ներթափանցում հյուսիսային Իրանից: Երկար տարիներ դիտելով այդ գազանի կյանքը, ես եկա այն եզրակացության, որ հովազները մեզ մոտ ապրում են տարին բոլոր և սերունդ են տալիս մեր երկրի այն ժայռերում, որոնք ընկնում են Ազատ գետից դեպի արևելք, մինչև Մեղրի և Ղափան: Այդ վայրերն էլ հենց մեր հանրապետությունում հովազի հայրենիքն են հանդիսանում:

Շատ գեղեցիկ և շատ անվախ գազան է հովազը: Կարելի է ասել, որ նա ամենասրտոտ գազանն է մեր բնության մեջ, այնքան սրտոտ, որ կարող է հրացանավորի ներկայությամբ լեշ ուտել և իսկի նրա կողմն էլ չնայել կամ հարձակվել որսորդի վրա, ինչպես նրանցից մեկը հարձակվեց Արմաշ գյուղացի Հակոբի վրա, թեկուզ և գնդակահարվեց հենց օդում, թռիչքի պահին:

Մայր հովազը մեզ մոտ զուգավորվում է ձմռան կեսերին: Գարնանը ծնում է երկուսից մինչև հինգ ձագ, որոնք տասն օր կույր են լինում, ուստի և հոգատար մայրը նրանց թաքցրած է պահում մի անմատչելի անձավում: Երբ մեծանում են, հետը որսի է տանում և սովորեցնում իր նենգ արհեստը:

Հովազին ցեղակից ուրիշ կենդանիներ կա՞ն Հայաստանում:

Կան, շատ կան: Հովազը մտնում է կատուների ընտանիքի մեջ: Այդ ընտանիքի ամենախոշոր ներկայացուցիչները առյուծն ու վագրն են եղել, որոնցից հնում կային Արարատյան դաշտում և որոնք վերացան. առյուծը՝ միջին դարերում, իսկ վագրը՝ անցյալ դարում: Արաքսի հովտում հնում կար կատվացեղ մի գազան ևս՝ կատվաշունը (գեպարդ), որով Փայտակարանի տափաստանում մեղիացիք վիթ էին որսում:

Մյուս կատուներից մնացել են՝ անտառային կատուն, որ բնակվում է մեր երկրի անտառոտ մասերում: Ընտանի կատվից խոշոր է, ուժեղ, ճարպիկ, պոչը՝ փրչոտ, մորթին՝ շերտավոր: Սիրած կերը թռչուններն են, նրանց ձվերը, մկնակերպ կրծողները: Սովորաբար դարան է մտնում ծառի ճյուղին մեկնված:



Մանուլ



Լուսան

## *Ճանաչի՛ր հայրենի բնաշխարհը*



Եղեգնուտի կատուն, որ գրեթե մի աղվեսի չափ գայան է, լուսանի նման ականջների ծայրերը մայափնջիկներով, որի պատճառով էլ կոչվում է նաև եղեգնուտի լուսան: Ապրում է Մեծամորի և Արաքսի առափնյա եղեգնուտներում: Շատ վնաս է տալիս ջրալող թռչուններին:

Տափաստանային բծավոր կատու: Այս գայանից շատ սակավ հանդիպում ենք Արաքսի հովտում և նրա եկերքների խճոտ բլուրներում: Միջին Ասիայից է գալիս այս «հյուրը» և Արաքսն ի վեր շարժվելով՝ գնում է դեպի Հոկտեմբերյանի տափաստանը, թեև Ուրծի լեռներում գտնված հին ոսկորներից կարելի է եզրակացնել, որ շատ հնում ևս բծավոր կատու եղել է մեր երկրում: Այս կատվից ինձ հաջողվել է խփել երկուսին: Դրանք եղեգնակատվի չափ խոշոր գիշատիչներ են, շիկավուն մորթիները պատած նոսր, սև խալերով: Երկուսին էլ հանդիպել եմ վարելահողերում: Ուրեմն՝ մկան որս էին անում: Քանդում են նաև տափաստանային թռչունների բները:

Անդրկասպյան երկրներից Արաքսի հովտով վերջին տասնամյակներում մեկ մոտ է ներթափանցում մի խոշոր կատու ևս՝ մանուլը: Սա ունի շիկակարմիր մուշտակ, թավամազ պոչ և ընտանի կատվից խոշոր է կրկնակի-եռակի չափով: Փրչոտ կենդանի է, դեմքը՝ լայն, երկար «այտամորուսներով»:

Հովազից հետո մեր երկրի կատուների ընտանիքի մեջ ամենից խոշորը լուսանն է: Միջակ մեծության շան չափ կենդանի է, ականջների ծայրերին մայափնջեր ունի, պոչը շատ կարճ է, իսկ գեղեցիկ, քնքուշ, գորշաշեկ մորթին պատած է խալերով:



Անտառային կատու:

Մեր կատուների ընտանիքի մեջ սա միակն է, որ ունի երկար ոտքեր, բաց ճանկեր, ուստի և արագավազ է, այնպես որ նապաստակն անգամ դժվար է փրկվում նրա հետապնդումից: Մութ անտառների բնակիչ է լուսանը: Փոքր ժամանակս տեսել եմ նրան ծառի վրա կուտապ եկած, այդտեղից նա ցած է ցատկում ջրի կամ արոտի գնացող այծյամների և նրանց ձագերի վրա: Այդ կերպ լուսանը շատ այծյամներ է ոչնչացնում մանավանդ Ղափանի շրջանում: Այդ գայանից քիչ քանակությամբ հանդիպում են նաև Լոռու, Դիլիջանի, Իջևանի, Շամշադինի անտառներում: Մի տարի Ֆանտան գյուղի պիոներներից մեկը լուսան էր խփել իրենց հանդում, որ պետք է եկած լիներ Ծաղկունյաց անտառներից: Սակայն ուրիշ երկրներում զուտ անտառային կենդանի լինելով, լուսանը մեր երկրում փոխել է իր բնավորությունը և հարմարվել նաև մերկ վայրերին: Սևանի ավազանում, օրինակ, մենք լուսանների ենք հանդիպում: Որտեղի՞ց կարող են հայտնվել նրանք: Գուցե Սևանի հնագույն անտառների՞ց: Չէ՞ որ երկու-երեք հազար տարի առաջ Սևանի ավազանում մեծ անտառներ են եղել: Նրանց մեջ բնակվելիս են եղել նաև լուսանները: Անտառները վերացել են, իսկ լուսանները հարմարվել են անտառազուրկ վայրերին: Մի քանի անգամ ես տեսել եմ, թե ինչպես հետապնդածս լուսանը անհետացել է Աժդահակի «չընգըլներում»՝ հրաբխային քարակույտերում: Այդ քարակույտերի մթին խորքերը այժմ անտառի թավուտի դեր են կատարում երբեմնի անտառային այդ կենդանու համար:

Նկարագրածս կատվացեղ կենդանիները բոլորն էլ պտղաբեր են՝ ծնում են 2, 3, 4, 5, 6 ձագ, որոնք փոքր ժամանակ գեղեցիկ, փափլիկ, չարաճճի արարածներ են, որ հաճախ են խաղում-գզվռտվում իրար և իրենց ծնողների հետ:

Գեղեցիկ են, բայց բոլորն էլ պատառոտող, արյուն թափող, արյունարբու:

Հաջորդ անգամ՝ կզաքիսների մասին:



Տափաստանային բծավոր կատու




## ԱՅԳԵՊԱՆ ՄՐՋՅՈՒՆՆԵՐ

Որոշ երկրներում էտնոմոլոգ գիտնականները, որոնք ուսումնասիրում են միջատների կյանքը, լուրջ հետազոտական աշխատանքներ են կատարում, որպեսզի օգտակար միջատներին կռվի հանեն վնասակար միջատների դեմ: Այդ տեսակետից ամենքից ուշագրավը գիշատիչ մրջյուններն են: Դրանք արագ կերպով ոչնչացնում են ծառերի այնպիսի վնասատուների, ինչպիսիք են կեղևակերը, փայտոջիլները և պտղատու ծառերի այլ վնասատուներ: Այժմ մի շարք երկրներում ցիտրուսային բույսերի պաշտպանության համար լայն չափով օգտագործում են գիշատիչ մրջյուններին: Այդ նպատակի համար գիտնականները ծառերի բունը ստորին մասում պատում են այնպիսի նյութերով, որպեսզի մրջյունները չկարողանան ծառից իջնել գետնի վրա: Բացի այդ, ծառերի սաղարթը իրար են կապում վայերի կամ պարանների միջոցով, որպեսզի այդ կամուրջներով մրջյունները կարողանան մի ծառից մյուսն անցնել: Այժմ մի շարք երկրներում գիշատիչ մրջյուններին բազմացնում են մեծ քանակությամբ և գործի են լծում պտղատու ծառերի պաշտպանության համար:

## ՃԱՆՃՈՐՍ ԹՓՈՒՏՆԵՐ

*Հարավային Աֆրիկայի քարքարոտ սարահարթում տարածված են հրաշալի թփուտներ, որոնց բուսաբանները անվանում են րորիդուլը:*

*Այդ բույսի տերևները պատված են արծաթագույն և նուրբ մազմզուկների խիտ ցանցով: Րորիդուլըն արձակում է շատ դուրեկան բուրմունք: Այդ բուրմունքով հրապուրված ճանճերը նստում են բույսի վրա, բայց խճճվելով նրա նուրբ մազմզուկներում՝ այլևս այդ թակարդից դուրս թռչել չեն կարողանում: Բույսի մազմզուկների ծայրին եղած գեղձերը սոսնձանյութ են արձակում, որը և պատճառ է դառնում ճանճերի լիակատար գերության: Րորիդուլըյին մոտիկից նայելիս, նրա վրա կարելի է նկատել անթիվ զոհված ճանճեր: Սակայն այս բույսը միջատակեր բույսերի նման որսած ճանճերով չի սնվում: Այդ ճանճերի դիակները րորիդուլըյին պետք են այլ նպատակի համար: Ճանճերի դիակներով սնվելու համար դեպի այդ բույսն են սողում սարդերի որոշ տեսակներ, որոնք և տարածում են բույսի ծաղկափոշին, այն փոխադրելով մի բույսից դեպի մի ուրիշը:*

*Հետաքրքրական է և այն, որ այդ բույսի ծաղիկները փոշոտվում են միայն այդ ճանճակեր սարդերի միջոցով:*

*Այնտեղ, ուր բուսնում է րորիդուլըն, տեղի բնակիչները նրա ճյուղերը կախում են իրենց բնակարաններում՝ ճանճորս խեժապատ թղթերի փոխարեն:*

Թ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ



## ՆԱ ՊԱՐԶԱՊԵՍ ՏԵՍՈՒՉ Է

Նյու-Յորքցի Վինսենտ Պետերսոնը փրկել է հինգ հազար կատվի կյանք՝ հաճախ վտանգելով սեփական կյանքը: Նա դրանց դուրս է բերել քաղաքային կոյուղու խողովակներից, դրանց ետեվից մագլցել է երկնաքերների բիվերը, ներս ընկել հրդեհվող տները, վերջինը դուրս եկել այն տներից, որոնք փլուզման ենթակա են: Բայց չկարծեք, թե Պետերսոնը այդ բոլորն արել է կենդանիների նկատմամբ ունեցած անշահախնդիր սիրուց: Նա «կենդանիների պաշտպանության միության» տեսուչն է՝ դժբախտ պատահարների գծով:

Եթե մարդկությունը ցանկանա մասնագիտությունների ցուցակ կազմել, ապա կպարզվի, որ իր գործում եզակի լինելու պատվին, Պետերսոնից բացի, ուրիշներն էլ են արժանի:

Օրինակ, Սիրալ Սմիտը զբաղվում է «Մերկուրի» ֆիրմայի կոնֆետը համտես անելով, և այն էլ միայն մեկ տեսակի՝ գնայուն կոնֆետը: Առավել արտառոց արհեստի է Նորբերտ Զինին՝ Սենտ-Պոլ քաղաքի «սապնակեըը»: Նա օճառ է ծամում, որպեսզի ակլալու համի առկայությամբ որոշի օճառի որակը: Լոնդոնի ջրազտիչ կայանում պահում են մի աշխատակից՝ Դելտոն Ստորջերսին, որը ջուրն է համտես անում օրական 60 անգամ: Նա իր մասնագիտության տեսանկյունից ջուրն ըստ համի բաժանում է 17 հիմնական խմբերի՝ «հողահամ», «մանանեխահամ»,

«վարունգահամ», «հոտած պանրահամ» և այլն:

Իսկ պանիրը աշխատանքով ապահովել է մի ամբողջ գերդաստան: Բոլոր Ծոռնխետեններ, մեծից փոքրը, Հոլանդիայի Էդամ քաղաքում հռչակված են որպես պանրի լավագույն «լողներ»: Դեռևս նրանց պապի պապըն էլ, տկտկացնելով պանրի գլուխներին, ըստ ձայներանգի որոշում էր դրանց հասունության աստիճանը և որակը: Ճիշտ է, Ծոռնխետենները եզակի չեն իրենց մասնագիտությամբ, սակայն իբրև այդ գործի վարպետներ, անզուգական են:

Ամերիկուհի Մադլեն Լին բոլորովին այլ բնույթի մասնագիտության տեր է. նա ծվծվոց, մըռընչյուն, ճիչ նմանաձայնելու վարպետ է: Չէ՞ որ ամեն անգամ ռադիոբեմադրության ժամանակ դժվար է իսկույն գտնել ու ձայնագրել, ասենք, որևէ գազան կամ երեխա, որոնց բնորոշ ձայնը անհրաժեշտ է ըստ պիեսի: Դրանց փոխարեն ճիշտ նույն ձայներն արձակում է Մադլեն Լին:

Իսկ ստոկհոլմցի Խելգի Նյուստրեմի գործը արվեստից շատ հեռու մի բան է: Նա հաչում է քսան տարբեր տեսակի շների նման: Հաչում է փողոցում, կանգնելով այն տների մոտ, որտեղ, նրա կարծիքով, պետք է որ ապրելիս լինեն հարկային մարմիններից թաքցված շներ: Հաչում է նա և, եթե պատասխան է լսում, իսկույն գրում է տվյալ հասցեն ու հայտնում հարկային տեսչության պետին: Նա էլ իր տեսակի «հարկային տեսուչ» է:



# ԿՅԱՆՔԸ ՔՆԱԾԻ ՈՒՂԵՂՈՒՄ

Մարդն իր կյանքի համարյա մեկ երրորդը քնած է անցկացնում: Միջին չափով ապրող մարդը մոտ հինգ տարին ծախսում է երազի վրա:

Քունը անփոխարինելի միջոց է օրվա ընթացքում կորցրած էներգիան վերականգնելու համար և յուրատեսակ «դեղ» է, որով բուժում են մի շարք հիվանդություններ: Մինչդեռ անբավարար քնից մարդը տառապում է գերհոգնածությամբ, գլուխը սեղմվում է, ուժասպառ է լինում, թուլանում են մտավոր կարողությունները, չի ուզում մարդկանց հետ շփվել: 30—60 ժամ լրիվ արթուն մնացած մարդուն թվում է, թե փոքր առար-




կաները շարժվում են, իսկ մեծերը՝ ձևափոխվում, հատակը ալիքաձև է երևում աչքին: 200 ժամում խախտվում է նորմալ գիտակցությունը: Ասում են, Մակեդոնիայի Պերսևս թագավորին, որը գերի էր ընկել հռոմեացիների ձեռքը, տանջամահ անելու համար արհեստականորեն անքնության էին դատապարտել:

«Քնածն ու մեռածը մեկ է»,— ասում է ժողովրդական առածը: Բայց դա ճիշտ է միայն արտաքուստ, կողմնակի դիտողի համար: Քնի պահին ուղեղը շարունակում է իր գործունեությունը, թեև՝ այլ բնույթի, բայց երբեմն՝ ավելի ակտիվ, քան արթուն ժամանակ: Այժմ գիտնականները



մանրազնին ուսումնասիրում են քնի պրոցեսը՝ օգտագործելով ուղեղից եկող կենսական էլեկտրահոսանքի տվյալները: Գտնում են, որ քնի պրոցեսը անցնում է չորս ստադիայով, որոնք կրկնվում են 90— 120 րոպեն մեկ անգամ:

Հենց որ մարդը հանգստանում է, պատրաստվում քնելու, նրա ուղեղում էլեկտրահոսանքի անհամաչափ և շարժուն ազդակները, որոնք բնորոշ են արթուն վիճակին, սկսում են հանդարտ ու համաչափ դառնալ: Մարմնի ջերմաստիճանը փոքր-ինչ ընկնում է: Հետզհետե շնչառությունը հավասարաչափ է դառնում, զարկերակը մեղմանում է և թուլանում են մկանները: Այս պահին նա արդեն քնած է, բայց դեռևս աղմուկից կարող է զարթնել: Ապա ապարատը գրանցում է բիոհոսանքի ալիքների սուր անկում ու բարձրացում, քնածը շուռումուռ է գալիս, նրա աչքերը դանդաղ պտտվում են փակ կոպերի տակ, արյան ճնշումը բարձրանում է, շնչառությունը արագ ու մակերեսային է դառնում, հաճախանում է զարկերակը: Սա քնի երկրորդ ստադիան է, երբ մարդն սկսում է երազ տեսնել: Երազ տեսնում են բոլորը, բայց մարդկանց 15 %-ը առավոտյան չեն հիշում իրենց տեսածը: Նրանք են լավ հիշում, ովքեր ուսումնասիրության են ենթարկվում կամ ինքնավերլուծություն կատարելու սովորություն ունեն: Բժշկությունն ինչ-որ կապ է տեսնում երազի և առողջական վիճակի միջև, և եր-

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*

բեմն երազի միջոցով փորձում են ախտորոշել հիվանդին:

Երազից հետո մարդն անցնում է քնի երրորդ ստադիային: Ուղեղագիր ապարատի ժապավենի վրա գրվում են դանդաղ, մեծ-մեծ ալիքներ, հազվադեպ բռնկումներով: Քնածը շնչում է նորմալ, մկանները թուլանում են, ջերմաստիճանը ցածրանում է, ճնշումն ընկնում է, սրտի զարկերը մեղմանում: Այժմ նրան զարթնեցնելն արդեն դժվար է:

Ամենախոր քունը գալիս է չորրորդ ստադիայում: Առողջ մարդու մոտ այդ ստադիան ամենաերկարն է:

Մարդու առողջության համար կարևոր է ոչ այնքան երկարատև, որքան խոր քունը, իսկ ամենակազդուրիչ քունը գալիս է լուսադեմին: Լավ քնելը առողջության նախապայմանն է, իսկ լավ քնի թշնամին, բացի այլևայլ հիվանդություններից, ֆիզիկական աշխատանք կամ մարմնամարզություն չկատարելն է, քնից առաջ շատ ուտելը, ջղայնանալը:

## ԱՐԱԳ ԸՆԹԵՐՑՈՒՄ

Մեկ րոպեում մարդը քանի՞ բառ կարող է կարդալ: Մտավորականը կարդում է մեկ րոպեում 250—300 բառ արագությամբ: Ովքեր ավելի պակաս են զբաղվում ընթերցանությամբ, կարդում են 150 բառ: Իսկ շատ փորձված ընթերցողները միանգամից տեսնում են տողի 4 սանտիմետրը:

Սակայն վարժված ընթերցողները (այդպիսի փորձեր կատարվել են Քենդի և Քենտերբերիի համալսարաններում) կարող են կարդալ մինչև 400 բառ, իսկ բացառիկ դեպքերում՝ նույնիսկ 970 բառ մեկ րոպեում: Ընթերցանության արագ մեթոդի ուսուցիչ Մայկլ Ֆորտեսկոն տաս րոպեի ընթացքում, պատմական լուրջ տեքստից, կարդաց 17 հազար բառ, և կարդացածը ճշտությամբ վերապատմեց: Նա հայտարարեց, որ հետաքրքիր տեքստ լինելու դեպքում մեկ րոպեում կարող է 5 հազար բառ կարդալ:



*ՍՏԵՖԱՆ ՑՎԱՅԳ*

# ԻՆՉ ՍՈՎՈՐԵՑՐԵՑ ԻՆՁ ՕԳՅՈՒՍՏ ՌՈԴԵՆԸ

*Այն ժամանակ ես դեռ պատանի էի: Սովորում էի Փարիզում և միաժամանակ գրական իմ առաջին փորձերն էի անում: Հոգուս խորքում զգում էի, որ կարող եմ լավ գրել. սակայն ինչ-որ բան պակասում էր ինձ, և ես չէի կարողանում հասկանալ, թե դա ինչն էր:*

*Չափ չկար ուրախությանս, երբ ինձ ներկայացրին նշանավոր քանդակագործ Օգյուստ Ռոդենին, որն իմ կարծիքով Միքելանջելոյին չի զիջում:*

*Երբ ես ճաշի էի հրավիրված Ռոդենի համեստ տանը, նրա բարյացակամ և անկեղծ վերաբերմունքը օգնեց ինձ հաղթահարելու ամաչկոտությունս: Նրա արվեստանոցում ես տեսա ավարտված և անավարտ շատ քանդակներ, բազմաթիվ դետալներ՝ ձեռքեր, նույնիսկ առանձին մատներ: Այստեղ ամեն ինչ խոսում էր մեծ վարպետի գեղեցիկի որոնման և լարված աշխատանքի մասին:*

*Ռոդենը հագավ աշխատանքային խալաթը և մոտենալով քանդակներից մեկին, ասաց.*

*— Սա իմ վերջին գործն է... Կարծում եմ, որ արդեն*

## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 6

### Երեք գծով



### Նավից եռանկյունի



ավարտել եմ այն:— Եվ որպեսզի ավելի լավ տեսնի, վայելչակազմ, թիկնեղ ծերունին մի քանի քայլ ետ գնաց, հեռվից նայեց ու ավելացրեց.

— Այո՛, այո՛, կարծում եմ, որ ավարտված է...— Բայց մի պահ ևս ուշադիր զննեց իր ստեղծագործությունն ու բացականչեց.— Ա՜յ, այստե՛ղ միայն. ուսի այս մասը շատ է կոպիտ: Ներեցեք...

Քանդակագործը վերցրեց գործիքը, ծեփվածքը կարծես սկսեց երգել այդ ուժեղ ձեռքերի տակ: Վարպետի աչքերը շողացին: «Այստեղ էլ... այստեղ էլ...» Նա դարձյալ մի քիչ ետ գնաց, դարձյալ ուշադիր զննեց: Նրա աչքերը մեկ փայլում էին ուրախությունից, մեկ խիստ արտահայտություն ստանում: Նա ջարունակում էր աշխատել:

Այդպես անցավ կես ժամ, մեկ ժամ... Նա կարծես մոռացել էր իմ ներկայությունը: Նրա համար իր ընտեղծած կատարյալ կերպարից բացի, ոչինչ գոյություն չուներ:

Վերջապես թեթևացած շունչ քաշեց, գործիքը մի կողմ շպրտեց և այնպես սիրով ու քնքշորեն, որով կարելի է սիրելիի ուսերին շալ գցել, նա քանդակը փաթաթեց թաց քաթանով, հետո մի պահ ևս նայեց ու շրջվեց դեպի դուռը: Հասնելով դռանը, հանկարծ նկատեց ինձ: Եվ այդ ժամանակ միայն հիշեց, որ ես իր հյուրն եմ:

— Ներեցեք, խնդրում եմ,— ասաց նա:— Բոլորովին մոռացել էի ձեզ:

Ես ոգևորությամբ սեղմեցի նրա ձեռքը: Վարպետը հասկացավ ինձ, ժպտաց և գրկեց ուսերս: Մենք դուրս եկանք արվեստանոցից:

Ընդամենը կես օրվա ընթացքում, այդտեղ ես ավելի շատ բան հասկացա, քան սովորելուս ամբողջ տարիների ընթացքում: Ես հասկացա, որ աշխատանքը պիտի ուրախություն և հոգեկան բավականություն պատճառի մարդուն:

Ոչինչ ինձ այդպես չէր ցնցել, որքան այն ճշմարտությունը, որ, երբ աշխատանքը ամբողջությամբ կլանում է մարդուն, նա կարող է մոռանալ և՛ ժամանակը, և՛ վայրը, և՛ իրեն շրջապատող ողջ աշխարհը: Այդ մեկ ժամվա ընթացքում ես հասկացա, թե որտեղ է թաքնված ստեղծագործողի հաջողությունների գաղտնիքը: Դա կայանում է ողջ միտքն ու կամքը մեկ նպատակի ծառայեցնելու կարողության մեջ:

Մարդը պետք է կարողանա լիովին նվիրվել աշխատանքին: Հաջողության հասնելու համար մեկ ուրիշ կախարդական բանաձև գոյություն չունի:

*Ռուս. թարգմ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆԻ*

Լույս է տեսնում 1923 թվականից



ՊԻՈՆԵՐ

№ 7 հուլիս 1970 թ.

ՀԼԿՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*նկ. ԳԵՎՈՐԳ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ (ՋԻՏՏՈ)*



**„Пионер“** на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան-15, Կարմիր բանակի փողոց, № 15. Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96.*

ՎՖ 05640: Պատվեր՝ 627: Տպաքանակ՝ 64200: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 16.VII.1970 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 10 կ.

# ԱՌՈՒՆԵՐԸ Ո՞ՒՐ ԵՆ ԳՆՈՒՄ

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ*

Առուները ո՞ւր են գնում,
Որտեղի՞ց են արդյոք գալիս,
Ո՛չ լռում են, ո՛չ էլ քնում,
Ո՛չ էլ ետ են նորից գալիս:
Այսպես օրերն առվի նման
Գնում են ու ետ չեն գալիս:

# ԻՆՉ ԼԱ՜Վ ԷՐ, ՈՐ...

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Այսօր քնից երբ արթնացա,
Ի՜նչ համերգ էր մեր պարտեզում,
Ծիծեռնակը մենակատար
Մեր տան քիվին երգ էր ասում:

Գովասանքից հնդկահավի—
Մի թուխ սարյակ ուրախ ցնծում,
Ու կտուցը արած շվի,
Ծիծեռնակի հետ էր մրցում:

Մի պստլիկ, սիրուն ծիտիկ՝
Աչքերով ջինջ ու երազուն,
Սովորում էր ձայնով քաղցրիկ
Իր մայրենի երգն ու լեզուն:

Արագիլն էլ հագած ֆրակ,
Զգաստ կանգնել բարդու ծառին,
Կտուցով իր երկար, բարակ,
Չափ էր տալիս երգիչներին:

Պարզ ու պայծառ նրանց երգում
Այնքա՜ն սեր կար, այնքա՜ն կարոտ.
Ինչ լա՜վ էր, որ քնից խորունկ
Շուտ արթնացա այս առավոտ:

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*